1916

№ 22.—Մայիսի 29

ՌՈՒՍԱՑԻՆ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ՕՐԵՐԸ

10 ԿՈՊԷԿ

10 ԿՈՊԷԿ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** տարեկան 4 րուբլի, կէս տարուան 2 ր. 50 կ.: Բարեգործական Ընկերութեան անդամների, հայ դպրոցների, ուսուցիչների հասարակական հիմնարկութեանց համար՝ տարեկան 3 ր., կէս տարուան 2 ր.: Արտասահման՝ տարեկան 5 ր., կէս տարուան 3 ր.

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝** Թիֆլիս, Արտասարաղեան հրապար. № 7. Հեռախօս № 29.

Պոստի հասցէն.—Тифлисъ, „Амбаваберъ". Tiflise, Rédaction du journal „Hambavaber".

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝** տողին 10 կոպ.

Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրերից։

Տպագրելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման։

Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։

Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ։

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ





† ՀԱՅ ԿԱՄԱՒՈՐԱԿԱՆ IV ԳՆԴԻ ՀՐԱՄԱՆԱՏԱՐ
ՔԵՌԻ

ԱՅՍՕՐ
ՔԵՌԻ
ԹԱՂՈՒՄՆ Է ԽՈՋԻՎԱՆՔՈՒՄ՝ ՊԱՏԱՐԱԳԸ ՎԱՆՔԻ ԵԿԵՂԵՑՈՒՄ

## Համաշխարհային պատերազմը

### ՏԱՃԿԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Կովկասեան ճակատում երկարատև նախապատրաստութիւններից յետոյ թիւրքերը վերջապէս ներգործական գործողութիւնների են անցել։

Մամախաթուն շրջանում, ուր գործում է Աւնի փաշայի բանակը, մօտ 35,000 հոգի, առայժմ հանգիստ է։

Բաբերդի շրջանում, ընդհակառակը, մեծ կենդանութիւն է տիրում։ Այդպէս Խալիլ բէյը իր 40,000-անոց բանակով անընդհատ յարձակումներ է գործում Փիրնեկապանի ամրութիւնների վրայ՝ դէպի Աշկալա ճանապարհ բանալու համար, սակայն շարունակ յետ է մղւում։

Երզնկայի գծի վրայ թիւրքերն ըստ երևոյթին իրենց գլխաւոր ուժերն են կենդրոնացրել՝ Կարինը վերագրաւելու մտադրութեամբ։ Ըստ ռազմագէտների հաւաստիացումների՝ այստեղ Վահիբ փաշայի հրամանատարութեամբ 10 դիւիզիա զօրք է կուտակուած։ Ռուսներն ստիպուեցան ամսոյս 19-ին թողնել Մամախաթունը և ամրանալ Թիկունքի դիրքերում։ Յետոյ նրանց յաջողուել է ենի գիւղի ամրութիւնների տակ թիւրքերի յարձակումները յետ մղել։

Պակաս յանդուգն չէ թշնամին իր յարձակումներով Տիգրանակերտի շրջանում։ Այստեղ Իզէթ փաշան մօտ 7 զօրաբանակ (դիւրզիա) կանոնաւոր զօրքով անընդհատ յարձակումներ է գոր-

# Ներքին տեսութիւն

## † ՔԵՌՈՒ ՄԱՀԸ

Հայ կամաւորների խմբերը և հայ ժողովուրդը առհասարակ ունեցան մի ծանր կորուստ։

Ուեանդուզի ճակատամարտում, պարսկական ռազմաբեմի վրայ, դիւցազնական մահով ընկաւ մեր կամաւորական արի խմբապետներից մէկը՝ քաջ Քեռին։

Ժողովրդական ռազմիկների շարքերում Քեռին հին, փորձուած ոյժ էր։

Նա ծնուել է Էրզրումում 1862 թ., անունն էր Արշակ։ Հայ ժողովրդական ազատագրական ասպարէզում նա հրապարակ եկաւ առաջին անգամ 1890 թ., երբ միացաւ յայտնի Կուկունեանցի խմբին՝ անցնելու Հայաստան, պաշտպանելու՝ իր եղբայրակիցներին քրդական գազանութիւնների դէմ։

Խումբը սահմանը անցնելիս, ռուսական հողում հանդիպեց անյաջողութեան. սահմանագլխի ռուսաց զինուորական գունդը դիմադրեց, խմբից ոմանք սպանուեցին, ոմանք փախան, իսկ մեծ մասը Կուկունեանի հետ կալանաւորուեցին, դատուեցին և աքսորուեցին Սիբիր տաժանակիր աշխատանքի։ Քեռուն եւ յաջողուեց ազատուել կալանաւորումից։

Մի քանի տարուց յետոյ, 1895 թ. նա նոր խումբ կազմեց Հայաստան անցնելու, ուր նա Բասէնի շրջանում տեղական ոյժերից կազմակերպեց ինքնապաշտպանութիւն քրդական հրոսակների դէմ։

Այդ առաքելութիւնը կատարելուց յետոյ՝ Քեռին վերադարձաւ Կովկաս. իսկ 1903-ին հաւաքեց կտրիճների մի նոր խումբ և ուղևորուեց Սասուն՝ միանալու Անդրանիկի խմբին, որը այնտեղ անհաւասար կռիւ էր մղում տաճիկ զօրքի և քրդերի դէմ, որոնք աշխատում էին ներս խուժել աւերելու երկիրը ու կոտորելու ժողովուրդը։

Սասունը երկարատև դիմադրութիւնից յետոյ՝ ընկաւ և տաճիկներն ու քրդերը երկիրը ներկեցին հայի արիւնով։ Մարտիկներից շատերը սպանուեցին կռւում, իսկ մի փոքր մասը ցիր ու ցան եղաւ։ Քեռին ազատուեց մահից և 1904 թ. երևաց Կովկասում։ Զանցաւ մէկ տարի, Կովկասում սկսուեցին արիւնահեղ հայ-թրքական ընդհարումները։

Քեռին անցաւ Զանգեզուր և Երևանի սահմանակից գաւառները, կազմակերպեց ինքնապաշտպանութեան խմբեր և պաշտպանեց այդ շրջանի հայութիւնը։

Մի երեք տարուց յետոյ Պարսկաստանում սկսուեց յեղափոխական շարժումը։

Եւ ահա՝ Քեռին երևում է այդտեղ ազատութեան մարտիկների շարքերում։ Սկզբում նա յայտնի Եփրեմի օգնականն էր, իսկ սրա մահից յետոյ ինքը դարձաւ զօրքի հրամանատար Պարսկաստանում և նրա անունը մեծ հռչակ ստացաւ։

1914 թ. սկսուեց ներկայ համաշխարհային պատերազմը։

Հայութեան միահամուռ կարծիքն էր, որ այս պատերազմով վերջնականապէս լուծուելու է Հայաստանի ճակատագրական խնդիրը. բազմաչարչար հայ ազգը պէտք է ազատուի մահմեդական դարաւոր բռնութիւնից և իրաւունք ստանայ ինքնուրոյն կեանքով ապրելու իր հայրենիքում։

Քեռին չէր կարող անմասն մնալ այս մեծ պատմական շարժման։ Նա թողեց Պարսկաստանը և շտապեց մեր երկիրը, ուր ամէն կողմից, բոլոր երկրներից աճապարում էին հայ երիտասարդներ, գրւում էին կամաւոր, կազմւում էին խմբեր։

Քեռին անցաւ չորրորդ կամաւորական խմբի գլուխը, իբր հրամանատար և մինչև իր հերոսական մահուան օրը նա անընդհատ պատերազմի դաշտումն էր, միշտ առաջին վտանգաւոր գծի վրայ։

Նա մասնակցել է բազմաթիւ կռիւների և իր քաջագործութիւններով միշտ հիացումն է պատճառել ոչ միայն իր զինակիցներին, այլև ռուս սպաներին։

Բոլոր զօրապետները, որոնց շրջանում գործել է Քեռին, միշտ նրան վերաբերուել են մեծ յարգանքներով շնորհիւ նրա քաջագործութիւնների։

Քեռու մահից յետոյ մնաց նրա այրին, տ. Քրիստինէ, որն այժմ Թիֆլիսումն է, այս պատերազմական ժամանակամիջոցում հաղորդակից է եղել իր արժանաւոր ամուսնու գաղափարական գործունէութեանը։ Նա ամենայն անձնուիրութեամբ աշխատել է գաղթականների շրջանում և մեծ մասամբ ամենավտանգաւոր վայրերում, ուր եղել է բծաւոր տիֆ և այլ համաճարակ։

Մեռաւ Քեռին ազնիւ մահով։ Փառք և պատիւ հերոսին, որը իր արեան գնով մինչև իր վերջին շունչը պաշտպանում էր իր դժբաղդ ազգը ու հայրենիքը։

Հանգիստ ոսկորներիդ. ժողովրդի դիւցազն։

Ս. Յարութիւնեան

---

## ՀԱՅՈՑ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ՊԵՏՐՈԳՐԱԴՈՒՄ

Մայիսի 14-ին փակուեց Պետրոգրադի Հայկական Համագումարը. Նիստերը բացուեցին մայիսի 10-ին. մասնակցողների թիւը հասնում էր 150 հոգու. պատգամաւորների մեծամասնութիւնը Պետրոգրադի, Մոսկուայի և Ռուսաստանի այլ հայ գաղութներից էին, իսկ Անդրկովկասից գնացել էին ներկայացուցիչներ համարեա թէ միայն գաւառներից։ Համագումարը զբաղուեց միմիայն փախստականներին օգնելու խնդիրներով և ընդունեց հետևեալ որոշումները.

1) Միջնորդել, որ պատերազմական գործողութիւններից առաջացած վնասների հատուցման օրէնքը տարածուի և հայ փախստականների վրայ.

2) Տեղեկութիւններ հաւաքել հայերի վրայ գործադրուած թուրքաց գազանութիւնների մասին և, համաձայն դաշնակից պետութիւնների 1915 թ. դեկլարացիայի, պատասխանատուութեան ենթարկել յանցաւորներին.

3) Կազմակերպել տեղական յանձնախմբեր փախստականների գոյքը պաշտպանելու համար.

4) Միջնորդել, որ օգնութիւն ցոյց տրուի թուրքերի ձեռքից նոր ազատուած շրջաններում և ծանր պայմանների մէջ գտնուող հայերին։

Համագումարի վերջին նիստը ամբողջապէս նուիրուած էր կենդրոնական հարցին, այն է՝ կազմակերպելու մշտական կենտրոնական մարմին բոլոր հայ կազմակերպութիւնների համար։

Այդ հարցի բաժանմունքի (սեկցիայի) մշակած կազմը (կոնստրուկցիան) այսպէս էր. պրեզիդիումը կազմում են նախագահը, նրա երկու օգնականը և վեց անդամ։ Պրեզիդիումը տարեկան չորս անգամ պարտաւոր է համագումար հաւաքել հայկ. կազմակերպութիւնների ներկայացուցիչներից, որոնք օգնում են պատերազմից վնասուածներին։ Այդ ներկայացուցիչների թիւը 60 ից աւելի է հաշւում։ Կենտրոնական մարմինը գտնուելու է Կովկասում, բայց ներկայացուցիչներ ունի Պետրոգրադում։

Կենտրոնական մարմնի կանոնադրութիւնը մշակելու և նրա հաստատելու միջնորդութիւն անելու համար, նաև առաջին համագումարի կազմակերպութիւնների ներկայացուցիչներին հրաւիրելու, ընտրւում է յանձնաժողով 8 մարդու կազմով, որը և կանոնադրութեան հաստատումից յետոյ հանդիսանալու է պրեզիդիումը։

Այս իսկ յանձնաժողովը այսպիսով հանդիսանալով ժամանակաւոր կենտրոնական մարմին, լիազօրում է ստանալ և բաժանել փախստականների համար ստացուող միջոցները։

Ընտրուեց ժամանակաւոր կենտրոնական մարմին հետևեալ կազմով. Ա. Աւրիբէկեան (Պետրոգրադ), Ստ. Մամիկոնեան (Մոսկուա), Ս. Յարութիւնեան (Թիֆլիս), Հ. Առաքելեան (Թիֆլիս), Ա. Սահակեան (Թիֆլիս), Փ. Թէրլէմէզեան (Թուրքահայերի ներկայացուցիչ) և Գարեգին վարդապետ՝ էջմիածնի «Եղբ. Օգնութեան» կողմից։

---

## Կ. Հ. ԲԱՐԵԳՈՐԾ. ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ԺՈՂՈՎԸ

—

Մայիսի 22-ին Կ. Հ. Բ. Ընկ.-թեան դահլիճում տեղի ունեցաւ նոյն Ընկ.-թեան տարեկան ընդհանուր ժողովը։

Ժողովի նախագահ ընտրուեց պ. Յ. Սպենդիարեանը, իսկ քարտուղար՝ պ. Գ. Էգիլեան։ Կարդացւում և հաստատւում է նախկին ժողովի արձանագրութիւնը։

Ը.-թեան Խորհրդի նախագահ պ. Ս. Յարութիւնեան տեղեկութիւններ տուաւ 1915 և 16 թուականներին մահացած Ընկերութեան անուանի բարերարների մասին։ 1915-ին Գորիում մահացել է Տէր-Յովհաննէս քահ. Գալստեանը, որը տարիներ առաջ իր հայրենի քաղաքում ունեցած մօտ 30 հազար ռուբլի արժեցող երեք կալուածքները նուիրել է Ընկերութեան։ Նոյն թուականին մահացել է Եսայի բէգ Թինիբէգեանը, որը իր ամբողջ հարստութիւնը՝ մօտ 300 հազար արժողութեամբ՝ կտակել է Բարեգործական և Կովկասի Հայուհեաց Ընկերութեան։ Այդ հարստութիւնը յիշեալ ընկերութիւններին կանցնի բարերարի կնոջ մահուանից յետոյ։

Մահացել է նոյնպէս Սմբատ Տէր-Առաքելեան, որը մի տուն և 10 հազար ռ. արժողութեամբ շարժական և անշարժ կայք է թողել Ընկերութեան։

1916-ին մահանում է Նիկ. Միրիմանեան, որը մօտ 12 հազար ռուբլի է կտակել Ընկերութեան։

Ժողովը յարգեց այս չորս բարերարների յիշատակը ոտքի կանգնելով։

Այնուհետև ժողովը անցնում է հաշիւների քննութեան։ Նախ կարդացւում է Տեղեկագրի այն մասը, որը վերաբերում է Ընկ.-թեան 1915 թուականի գործունէութեան։ Այս մասին խօսուած է «Համբաւաբեր»-ի անցեալ համարում։ Ապա կարդացւում է Վերստուգիչ Յանձնաժողովի արձանագրութիւնը և կենտրոնական Խորհրդի այդ մասին տուած բացատրութիւնները։

Հ. Առաքելեանը հարց է բարձրացնում, թէ ընդհանուր ժողովների որոշումների գործադրութեան վրայ ինչ մարմին է հսկելու։ Նրա կարծիքով այդ պարտականութիւնն ընկնում է Վերստուգիչ Յանձնաժողովի վրայ. նա պէտք է նաև այդ տեսակէտից քննադատէ Խորհրդի գործունէութիւնը։ Խորհրդի պ. նախագահի բացատրութիւններից և կանոնադրութեան պատշած յօդուածների ընթերցանութիւնից յետոյ պարզւում է, որ կանոնադրութեամբ Վերստուգիչ Յանձնաժողովին որոշ պարտականութիւն է յատկացրած, որի մէջ չի յիշատակած այն պարտականութիւնը, որի մասին հարց է բարձրացնում պ. Հ. Առաքելեանը։

Ժողովականներից մէկը առաջարկում է այսուհետև անդորրագրեր չուղարկել զանազան հաստատութիւնների կամ հենց նոյն իսկ Ընկերութեան անդամներին, որովհետև թիւրիմացութիւններ են առաջանում, որի վրայ մատնանշում է նաև Վերստուգիչ Յանձնաժողովը։ Ժողովը սակայն այս առաջարկը գտնում է անգործնական և յարմար է համարում նախկին եղանակի շարունակելը։

Վերստուգիչ Յանձնաժողովի անդամ պ. Աթայեան ցանկալի է համարում, որ Խորհրդի որոշ նիստերին հրաւիրուեն Վերստուգիչ Յանձնաժողովի անդամները, որ յայտնել է նաև Յանձնաժողովը իր պաշտօնական արձանագրութեան մէջ, թէ Խորհուրդը իր գրաւոր բացատրութիւնների մէջ և թէ ժողովը այդ բանը շատ ցանկալի են համարում։

Ինչպէս հաշիւներից երևում է, Պօղոսեան ֆոնդի տոկոսներով 1915 թուականին ոչ մի գիրք չէ հրատարակուել։ Գ. Առ. Բաբախանեանը (Լէօն) զարմանք է յայտնում, թէ ինչպէս թղթի և տպագրութեան թանգութիւնը պատճառ կարող է դառնալ գրքեր չը հրատարակելու որոշման համար. չէ՞ որ թանգութիւնը պատճառ չի դառնում, որ Ընկերութեան ճաշարանը փակուի. գիրքն էլ ժողովրդի համար հացի պէս կարևոր մի բան է։ Չէ՞ որ այդ նկատառումներով է Ընկերութիւնն այսպիսի թանգ տարի «Համբաւաբեր» շաբաթաթերթը հրատարակում։

Գ. Աֆրիկեանը հարց է տալիս, թէ ինչո՞ւ անցեալ տարիները Թրքահայերի համար ժողովուած մօտ 14 հազար ռուբլին չի գործադրուել. չէ՞ որ կարիքը մեծ է եղել։ Խորհրդի նախագահը յայտնում է, որովհետև գաղթականներին օգնող հաստատութիւնները շատ են և նպաստներ տալու կարիքը անհրաժեշտութեան հասած չէ, ամբողջովին այդ գումարը չի ծախսուած։

Ժողովը նախ հաստատեց Ը. թեան 1915 թուականի հաշիւը և ապա մի քանի ճիւղերի հաշիւներն ու նախահաշիւները։ Ը.-թեան ճիւղերն են հետևեալ վայրերում. Ախալցխա, Երևան, Քարվանսարա, Սուրամ, Դիլիջան, Ղուբա, Գրօզնի, Ախալքալաք, Սուխում, Ղարաքիլիսա, Վելիսցիխէ, Բաշ գիւղ, Դերբենդ, Ղափան, Ղարս, Գորի, Պեատիգորսկ, Վլադիկավկազ, Աբասթուման, Օնի, Մարդակերտ, Ցարսկի-Կոլոդցի, Նուխի, Վերին-Ագուլիս, Բաքու, Ալէքսանդրապոլ, Գորիս, Թելաւ, Ցխինվալ, Ղայարաշ։ Եւ որովհետև Տեղեկագրի դպրոցական գործի տեղեկութիւնները շատ են համառօտ, Խորհրդի անդամ պ. Իս. Յարութիւնեանը լրացնում է այդ պակասը։ Նա յայտնում է, որ այս վերջին երեք տարուայ ընթացքում Ընկերութիւնը նպաստների բաշխումը առատացրել է, այսպէս օր. 1912-ին Ընկերութիւնը նպաստել է 63 դպրոցի. այդ դպրոցներն ունէին մօտ 2109 աշակերտ. ուսուցիչների թիւը 55 էր. այդ դպրոցների մեծ մասը կազմուած էր ա. և բ. բաժանմունքներից, ամեն մի դպրոց միջին հաշուով ունէր 33 աշակերտ։ Նպաստ տրւում էր 16,000 ռ., մինչդեռ այժմ նպաստ են ստանում 123 դպրոց, որոնք ունեն 154 ուսուցիչ և 5670 աշակերտ. նպաստ ստանում են մօտ 30,000 ռ.։ Ամեն մի դպրոց միջին հաշուով ունի 58 աշակերտ. դպրոցների ուսումնականը աւելի կանոնաւոր է. դասարաններն աւելի շատ։

Ը.-թեան Խորհուրդն ուշադրութիւն է դարձրել նաև դպրոցական պիտոյքներ գնելու՝ զանազան դպրոցների նուէր ուղարկելու համար, թէև առայժմ շատ փոքր չափով։

Գ. Իս. Յ.—եանը կանգ է առնում նաև ուսուցիչների ռոճիկների յաւելման հարցի վրայ և առաջարկում է եկող տարուանից աւելացնել գոնէ 100-ական ռուբլով։

Այս մասին խօսում են պ.պ. Հ. Առաքելեան, Յ. Տէր-Միրաքեան, Աթայեան և Ս. Յարութիւնեանը. վերջինս իր խօսակցութեան ընթացքում յայտնում է այն ուրախալի լուրը, թէ ժողովին ներկայ վաճառական պ. Ամիրաղեանը հայրենի գիւղի իր մօտ 12 հազար ռուբլի արժեցող տունը նուիրում է դպրոցին և դպրոցն ապահովելու համար մի կալուածք էլ է նուիրում։ Ժողովը ծափահարութիւններով իր գոհունակութիւնն է յայտնում պ. Ամիրաղեանին։ Ուսուցիչների ռոճիկն աւելացնելու մասին ժողովը միայն յանձնարարում է Ընկերութեան Խորհրդին այդ ուղղութեամբ աշխատելու և միջոցներ ձեռնարկելու։

Այնուհետև ժողովը անցնում է Խուդադեան որբա-

նոցի հարցի քննութեան։ Այս խնդրին Խորհրդի անդամ պ. Իս. Յարութիւնեանը ծանօթացնում է ժողովականներին։ Որբանոցը փակելու և մի այլ հաստատութիւն հիմնելու ցանկութիւնը վաղուց է արծարծուել թէ ընդհանուր ժողովներում և թէ Խորհրդի նիստերում։ Խորհուրդն այն կարծիքին է, որ արուած ծախքերի համապատասխան օգուտ չի տալիս որբանոցը. մինչև այժմ մօտ 50 հազար ռուբլի է ծախսուել, սակայն աւարտել են մեր միջնակարգ դպրոցները միմիայն վեց հոգի։ Գիշերօթիկ կեանքը վատ է ազդում աշակերտուհիների վրայ. Նրանք կեանքից կտրուած են լինում և աւարտելուց յետոյ չեն կարողանում դիւրութեամբ յարմարուել կեանքի պահանջներին։ Բացի այդ այժմ այնքան որբանոցներ կան, որ մի այլ որբանոց պահելու և այնքան մեծ ծախքեր անելու, երբ ծով կարիքներ կան, աննպատակայարմար է։

Ժողովում եղան այս կարծիքները պաշտպանողներ և հակառակորդներ, որոնք պահանջում էին պահել որբանոցը, փոփոխութիւն մտցնելով նրա կազմակերպութեան մէջ։

Ժողովը ձայների ճնշող մեծամասնութեամբ որոշեց թոյլ տալ Խորհրդին լիկուիդացիայի ենթարկել որբանոցը, շարունակելով նպաստել եղած որբերին և միւս ժողովին ներկայացնել մշակուած ծրագիր՝ Խուդադեանի անունով մի նոր հաստատութիւն ձեռնարկելու։

Օրակարգի չորրորդ կէտի՝ գաղթականների և որբանոցների մասին զեկուցումը խնդրի մասին պ. Ս. Յարութիւնեանը յայտնեց, որ այժմ դեռ տպագրուած պատրաստ չեն բոլոր հաշիւները, որ մի միլիոնից անցնում է և Վերստուգիչ Յանձնաժողովը դեռ չի վերջացրել իր աշխատանքները, ուստի այս ժողովին չեն կարող քննել այդ հարցերը։ Այնուհետև նա համառօտ մի զեկուցում է տալիս գաղթականների թուի, նպաստների, ծախքերի ընդհանուր քանակի, պահեստներ կազմակերպելու խնդրի և կազմակերպութեան ձևի, գործունէութեան շրջանների մասին։

Այս զեկուցումից յետոյ պ. Յ. Առաքելեանը առաջարկում է ժողովին որոշել երկուշաբթից յետոյ մի ընդհանուր ժողովի մէջ քննելու այդ հաշիւները։ Սակայն ժողովի նախագահի բացատրութիւնից յետոյ, թէ յայտնի չէ թէ երբ կվերջանայ հաշիւների տպագրութեան և վերստուգման գործը, այդ պատճառով ժամանակ որոշել անկարելի եղաւ։

Ժողովը ցանկութիւն յայտնեց, որ անկարելի է շուտ հրաւիրել այդ ընդհանուր ժողովը։

Այս ժողովի ընթացիկ հարցերի մէջ էր դրուած ուսուցչական ֆոնդի կանոնադրութեան երկու յօդուածների փոփոխութեան խնդիրը։

4-րդ յօդուածը փոխւում է այսպէս. «Միանուագ նպաստ տրւում է հիւանդութեան և այլ անբարեյաջող դէպքերում, երբ ուսուցիչը կամ ուսուցչուհին նիւթական նեղ դրութեան մէջ է։ Ուսուցիչ-ուսուցչուհու մահուան դէպքում նրանց ընտանիքը կարող է ստանալ միանուագ նպաստ։

5-րդ յօդուածը փոխւում է ըստ այսմ. «Կենսաթոշակ տրւում է, երբ ուսուցիչը կամ ուսուցչուհին ծերութեան կամ անբուժելի հիւանդութեան պատճառով ընդմիշտ զրկւում են աշխատելու կարողութիւնից և նրանց ընտանիքը մնում է նիւթական նեղ կացութեան մէջ։ Կենսաթոշակ ստանալու համար պահանջւում է, որ ստացողը ծառայած լինի հայոց դպրոցներում ոչ պակաս քան 15 տարի»։

Խորհուրդը առաջարկում է Պօղոսեան ֆոնդի 8 հազար ռ. վրայ աւելացնել տոկոսները և կազմել 10 հազար ռուբլիանոց մի միայուն և անձեռնմխելի գումար. Նման ցանկութիւն է յայտնել նաև նուիրատու պ. Պօղոսեանը։ Ժողովը ընդունում է այդ առաջարկը։

Վերստուգիչ Յանձնաժողովն առաջարկել է, որ Ընկերութիւնը տոկոս տայ միայուն դրամագլուխների այն տոկոսների համար, որոնք ժամանակի ընթացքում չեն գործադրւում։ Խորհուրդն այդ եղանակը ցանկալի չէ համարում և առաջարկում է ընդհանուր ժողովին մերժել Վերստուգիչ Յանձնաժողովի այդ ցանկութիւնը։ Ժողովը մերժում է։

Օրակարգի խնդիրները սպառած համարելով՝ ժողովն անցնում է Խորհրդի չորս հերթով դուրս գնացող (Ի. Յարութիւնեան, Մ. Բալանթարեան, Ս. Լիսիցեան, Կ. Խալաթեան) և հրաժարուող Ս. Խարազեանի տեղ նոր անդամների և փոխանդամների ընտրութեան։

Գաղտնի քուէարկութեամբ ընտրւում են անդամներ՝ Իս. Յարութիւնեան, Ս. Լիսիցեան (ինժեներ), Ս. Բալադեան, Գ. Տէր-Պետրոսեան և Մամուլեան։ Անձնափոխանորդ է ընտրւում Թ. Խաչատրեան։

Վերստուգիչ Յանձնաժողովի անդամներ են՝ Մ. Մաղաքեան, Ղ. Յակոբեան և Մ. Աֆրիկեան։

---

## ԿԵՆՍԱԿԱՆ ՄԹԵՐՔՆԵՐԻ ՊԱՀԵՍՏՆԵՐ ԵՒ ՍՊԱՌՈՂԱԿԱՆ ԽԱՆՈՒԹՆԵՐ ՓԱԽՍՏԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

—

Երկարատև քննութիւններից և բանակցութիւններից յետոյ վերջապէս կայացաւ փոխադարձ համաձայնութիւն փախստականների գլխաւոր լիազօր գեներալ Վ. Մ. Թամամշեանի և Կովկասի Հայոց Բարեգ. Ընկերութեան Խորհրդի միջև։ Այդ համաձայնութիւնը ստացաւ գրաւոր պայմանագրի ձև ստորագրութեամբ երկու կողմերի։

Կառավարութիւնը ի դէմս պ. գլխաւոր լիազօր գեն. Թամամշեանի տալիս է Կ. Հ. Բ. Ը. Խորհրդին 900,000 ռ. այն պայմանով, որ Խորհուրդը հիմնի Անդրկովկասում, Տաճկահայաստանի նուաճած մասերում ու Պարսկաստանում, ուր գտնւում են փախստական հայեր և ասորիներ, պահեստներ, սպառողական անշարժ ու շարժական խանութներ—մատակարարելու փախստականներին կենսական գլխաւոր մթերքներ՝ ալիւր, շաքար, թէյ, բրինձ, սապոն, լուցկի, նաւթ և այլ իրեր։ Բացի այս գումարից, որը ծառայելու է շրջանառութեան համար, Ընկերութիւնը ստանում է և մի քանի ապրանքատար ինքնաշարժ կառքեր (աւտոմոբիլներ) ձրիաբար։

Ընկերութեան Խորհուրդը իր կողմից պարտաւորուել է կազմակերպել և վարել այդ գործը և լիկուիդացիայի—գործի դադարման դէպքում—վերադարձնել կառավարութեան ստացած մայր գումարը կանխիկ դրամով և իրերով Ընկերութեանը նստած գներով և մայր գումարից դուրս գալով զանազան կորուստներ։ Գործի պահանջելիք ծախսերը աւելանում են մթերքների գների վրայ, իսկ մթերքները պէտք է վաճառուեն փախստականներին իրենց ինկական գներով։

Պահեստների բացումով վերջ է տրւում մինչև օրս գործադրուող օգնութեան եղանակին՝ ալիւրի բաժանելը փախստականներին նրանց նպաստի հաշուին։

Ամեն մի փախստական իրեն հասանելիք նպաստը ստանալու է կանխիկ դրամով և ինքն իր կամքով գնելու է Ընկերութեան պահեստներից, խանութներից ինչ որ կամենայ, իսկ այդ պահեստներում և խանութներում ամեն բան աւելի արժան կը ծախուի քան թէ մասնաւոր խանութներում. որովհետև ա) դրամագլուխը տրւում է առանց տոկոսի, բ) մթերքները բերւում են Ռուսաստանից և Հիւսիսային Կովկասից և գնւում են անմիջապէս գլխաւոր ֆիրմաներից, գ) ապրանքները երկաթուղիով փո-

խադրւում են արտօնեալ տարիֆով, որը խոշոր ազդեցութիւն ունի գնի նուազման վրայ, իսկ ապրանքատար ինքնաշարժները (աւտոմոբիլները) ձրի պէտք է կրեն ապրանքը Ազատաֆայից մինչև Իգդիր, և դ) վերջապէս աշխատանքների մի մասը կատարուելու է ձրի։

Այս գործը կազմակերպելու և վարելու համար Խորհրդի կողմից Թիֆլիսում կազմուած է մի առանձին գլխաւոր Կոմիտէ նախագահութեամբ Խորհրդի նախագահի։ Կոմիտէտի անդամներն են՝ Թ. Ա. Խաչատրեան (գործարանատէր), Կ. Մ. Ալիխանեան (բանկի նախկին կառավարիչ, գործարանատէր), Մ. Ա. Քալանթարեան (Բ. Ընկ. Խորհրդի անդամ, գործարանատէր և վաճառականական բանկի Խորհրդի անդամ), Ա. Ի. Պօղօսեան (Խորհրդի անդամ, վաճառական), Ա. Ա. Մելիք-Ազարեանց (փոխ-նախագահ Կ. Հ. Բ. Ընկ. Խորհրդի), Վ. Օ. Տէր-Զախարեանց (Թիֆլիսի վաճառականների բանկի կառավարիչ), Մ. Ի. Բեբրեբեանց (նոյն բանկի դիրեկտոր), Ս. Գ. Մազմանեանց (Վոլժսկո-Կամսկի բանկի կառավարիչ), Գ. Մ. Ծուրինեանց (Հայկ. Կենտր. Կոմիտէի գանձապահ և անդամ Կովկասեան բանկի Վարչութեան), Լ. Փ. Ղուլեանց (ինժենէր), Գ. Մ. Տէր-Պետրոսեանց (Միջազգային բանկի կառավարիչ)։

Բացի այս անձինքներից՝ գլխաւոր Կոմիտէի մէջ հրաւիրուած են մէկ-մէկ ներկայացուցիչ Էջմիածնի Եղբայրական Օգնութեան Կոմիտէից, Նպաստամատոյց Ընկերութեան և Հայոց Գիւղատնտեսական Ընկերութեան վարչութիւններից, իբր փախստականների օգնութեան գործով զբաղուող մարմիններից։

Գլխաւոր Կոմիտէտի անդամների կազմը ներշնչում է այն հաւատը և յոյսը, որ գործը կը տարուի նպատակայարմար ձևով, որ մթերքները կը գնուեն լաւ տեսակից և աժան, կը կատարուի ամեն տեսակ խնայողութիւն, որպէս զի ամեն մի կոպէկը ծառայի փախստականների օգտին։

Թիֆլիսում արդէն բացուել է գրասենեակ, որտեղ կենտրոնանալու է հաշուապահութիւնը. Ռուսաստանում և Հիւսիսային Կովկասում պատուէրներ տուած ալիւրի, շաքարի և այլ իրերի արդէն սկսուել է ստացուել։ Պահեստներ վարձուած և պատրաստ են հետևեալ վայրերում. Թիֆլիս, Ղարաքլիսա, Ալէքսանդրոպոլ, Սարիղամիշ, Բասէն, Ազատաֆա, Քարվանսարա, Դիլիջան, Ելենովկա, Նոր-Բայազիդ, Ախտա, Երևան, Էջմիածին, Իգդիր։ Կարգադրուած է պատրաստել պահեստներ Դիադին, Ալաշկերտ Ղարաքլիսա, Խնուս, Մուշ, Վան և Սալմաստի մի քանի վայրերում, որտեղ ապրում են փախստականներ։ Ամեն մի պահեստում կամ սպառողական խանութում լինելու է կառավարիչ և հաշուապահ։ Դրսի ընդհանուր հսկողութիւնը յանձնուած է մէկ գլխաւոր լիազօրի մի քանի հաշուապահ օգնականներով, իսկ տեղական Բարեգ. Ընկերութեան ճիւղերի Վարչութիւններին և Եղբայրական Օգնութեան Կոմիտէտներին նոյնպէս տրուելու է անմիջական և մշտական հսկողութեան իրաւունք։

Մթերքների մատակարարումն պահեստներից և խանութներից կը սկսուի յունիսի սկզբից ըստ կարգի, ուր կը հասցնուի ապրանքներ։

Վանի, Խնուսի, Մուշի և Բասէնի շրջաններում Կոմիտէն ունենալու է իր սեփական տրանսպորտը՝ ֆուրգոններ, սայլեր ապրանքների փոխադրութեան համար։ Պէտք է յուսալ, որ այս եղանակով կազմակերպած օգնութիւնը խիկապէս կը թեթևացնի թշուառ փախստականների դրութիւնը ու կառավարութեան տուած միջոցները, կազմակերպութիւնների աշխատանքները ու ջանքերը կը հասնեն իրենց նպատակին, վերջ կդրուի այն անթիւ մեծ մասամբ արդարացի դժգոհութիւններին ու բողոքներին փաստականների կողմից, որը մենք ցաւօք սրտի միշտ լսում էինք նպաստներ բաժանող անձանց և մարմինների դէմ։

Գործի յաջողութիւնը կախուած է այն բազմաթիւ անհատներից, որոնք ստանձնելու են զանազան պաշտօններ այս գործում։

Ամեն մէկը դրանցից պէտք է ներշնչուած լինի այն գաղափարով, որ մեր ազգի ճակատագրական միջավայրում կատարում է մարդասիրական և ազգային պարտականութիւն. նա պէտք է զգայ, որ նրանից և իրեն պաշտօնակիցներից պահանջւում է նուիրուել գործին ամենայն եռանդով ու սիրով. և այդ կը լինի ամենալաւ գրաւականը սպասելիք արդիւնաւոր գործունէութեան։

Ս. Ց.

---

## ՓԱԽՍՏԱԿԱՆՆԵՐԻՆ Ի ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆ

Կ. Հ. Բ. Ը.-թեան Բաթումի Վարչութիւնից.— Այլ և այլ քաղաքներից հեռագիրներով և նամակներով դիմում և խնդրում են վարչութեանս՝ ուղարկելու կամ տալու մեր որբանոցում գտնուած իրենց ազգական որբերին, առանց ներկայացնելու ազգակցութեան ապացոյցներ։ Ցայտնում ենք, որ այդպիսի դիմումները կը թողնուեն առանց հետևանքի։

Վարչութիւնս ոչ մի աջակցութիւն ցոյց չի կարող տալ այն անձանց, որոնք կամենում են Բաթումով Տրապիզոն անցնել իրենց գործերի համար։

Ցօգուտ մեր որբանոցում խնամուող Տրապիզոնի որբերի և գաղթականների թէ դրամական և թէ իրերի նուէրները պիտի յղել Բարեգործական Ընկերութեան Բաթումի ճիւղի վարչութեան ուժեղացրած կազմին, որը բաղկացած է Բ. Ը.-թեան Վարչութեան 6 անդամից, բաթումարնակ տրապիզոնցիների հայրենակցական միութեան երեք՝ հայ լուսաւորչական, հայ կաթոլիկ հոգաբարձութեան, ուսուցչական խմբի և կրթական ընկերութեան մէկ-մէկ ներկայացուցիչներից։

Մեր հասցէն՝ Батумъ, Батумское отдѣленіе Армянскаго Благотворительнаго Общества на Кавказѣ.

Նախագահ վարչութեան՝ Մ. ա.-ք. Մելեան
Անդամ-քարտուղար՝ Աշոտ Հախումեան

Հայ գաղթականներին նպաստող Բագուի Կոմիտէն յայտարարում է ի գիտութիւն բոլոր հայ գաղթականների, որ Բագուն լինելով ոչ-գաղթականական վայր, գաղթականներին Բագուում ապրելը արգելուած է կառավարութեան կողմից։ Ուստի Բագուի Կոմիտէն խնդրում է գաղթականական գործով զբաղուող բոլոր մարմիններից՝ այլ ևս Բագու նոր գաղթականներ չուղարկել և յայտնել գաղթականներին, որ Բագու եկող գաղթականները Բագուի Կոմիտէից ոչ մի նպաստ չեն ստանալու և նրա հովանաւորութեան ներքև չեն գտնուելու։

Նախագահ Կոմիտէի՝ Հայկ Ս.
Քարտուղարի տեղ՝ Ա. Մուրադեան

---

## ԳԱՒԱՌ

### ՃԱԿԱՏԷՆԻ ԴՊՐՈՑԸ

Ճակատէնն ունի 95-100 տուն բնակիչ, որոնք առանց բացառութեան պարապում են հողագործութեամբ։ Ժողովուրդը, շնորհիւ տեղական պայմանների, վերին աստիճանի աշխատասէր է։ Աշխատասիրութեան նպաստում են նախ՝ տեղի լեռնոտ ու քարքարոտ դիրքը, յետոյ հողի յատկութիւնը, որ անխնայօրէն ծածկւում է մացառներով և ամբերրութիւնը ու անտառները։ Սակայն չնայելով իւր տնտեսական ծանր պայմաններին, ճակատէնցին, չի զլացել իւր հոգեկան պահանջներին ևս բաւարարութիւն տալու։

Ճակատէնցիները առաջ պահել են մասնաւոր դպրոցներ, ո-

րոնք չնայած «Տէր-Թովիկեան» բաղկացման (սիստեմին), այնուամենայնիւ հին սերնդի մէջ գրագիտութիւն են տարածել։

Մի ժողովուրդ, որ տարիներ ու դարեր առաջ զգացել է ուսման անհրաժեշտութիւնը՝ չէր բաւականանալ նախկին փթած ձևի դպրոցներով, ուստի և կանոնաւոր մի դպրոց ունենալու համար ժողովուրդը 1910 թուականին դիմում է և իրաւունք է ստանում Մատթէոս Բ. երջանկայիշատակ կաթողիկոսից։

Ժողովուրդը գիտակցելով, որ յարմար շէնքը կրթական գործում առաջնակարգ տեղ է բռնում, մութ, խոնաւ սենեակներում կրթուող սերունդը ենթակայ է հակառողջապահական ու հակամանկավարժական ազդեցութիւնների, ուստի որոշում է սեփական ուժերով կառուցանել շէնքը։ Այդ միջոցին հանդէս է գալիս համագիւղացի այրի տիկին Նարինգիւլ Ղարախանեանը ու յանձըն առնում կառուցանել դպրոցի շէնքը ի յիշատակ իր ամուսնու՝ Յովհաննէս Ղարախանեանի։ Ժողովուրդն ևս կարեցածին չափ սիրով օգնում է այրի տիկնոջ. ահա 1911 թ. աւարտւում է ճակատէնի փառահեղ «Յ.-Ղարախանեան» դպրոցի շէնքը։

Յարգանք այրի տիկնոջը, որ բարի գործով անմահ դարձրեց ամուսնու անունը։

«Յ.-Ղարախանեան» դպրոցը 10 թուականից դէս փոխել է մի շարք ուսուցիչներ. Յովհաննէս Աղամեան, որը դպրոցական կրթութիւն չունի, բայց յառաջադիմած ու բարեխիղճ ուսուցիչ լինելու կոչմանն է հասել ինքնակրթութեամբ, Խորէն Աթաջանեան, ճեմարանաւարտ և Սարգիս Տէր-Մարտիրոսեան, թերուս։

Վերոյիշեալ ուսուցիչների օրով դպրոցը կառավարուել է մօտ 40 աշակերտներից ստացուած թոշակներով։

Դպրոցը թէ իր բարձրութեան հասցնելու և թէ ազատելու զանազան թերուս ու ինքնակոչ «ուսուցիչների» ձեռքից, դիմում են 1914-ին Կ. Հ. Բ. Ընկերութեան Խորհրդին ու ստանում տարեկան 300 ռ. նպաստ։ Շրջանային տեսուչ Յովհ. Գէորգբէկեանի ջանքերով ծխական տուրք են նշանակում տարեկան 150 ռ. ու թոշակների և եկեղեցու եկամտի հետ ստանում մի գումար՝ ներկայ ուսուցիչների անբաւարար ռոճիկներով միդասեան դպրոց կառավարելու համար։

Ունենալով բաւարար եկամտի աղբիւրներ՝ անցած ուս. տարում ուսուցչուհի է հրաւիրւում օր. Մարիամ Կոլապոտեանը։

Օրիորդի օրով աշակերտուհիների թիւը համարեա կրկնապատկուել և 60-ի է հասել։

Ներկայ ուսումնարանական տարին սկսուել է սեպտեմբերի (1915 թ.) 7-ից։ Տարուայ ընթացքում կանոնաւոր պարապմունք է եղել 192 օր։

Տարուայ սկզբում աշակերտների ընդունելութիւնը կատարուել է համաձայն օրէնքի փոխադրութեան։

Ընդունելութիւնը վերջանալուց յետոյ պարզուել է, որ III-րդ բաժանմունք յաճախում են միայն 4 հոգի։ Աշակերտների քիչ թիւը ու III-րդի անհամապատասխան պատրաստութիւնը առիթ է դառնում հոգաբարձական խառն ժողովում որոշելու ներկայ դպրոցական տարում III-րդ բաժանմունք չպահելու։

Որոշման համաձայն ներկայ տարում պահուել է միայն I և II-րդ բաժանմունք։ Աշակերտ-աշակերտուհիների թիւն է սոյն տարուայ՝ Ա. բաժանմունք. տ ղ ա յ 35, որոնց հասակը 7—14 տարեկան, ա ղ ջ ի կ 2, հասակը 9—11. ընդամենը 37։

Բ. բ ա ժ ա ն մ ու ն ք տ ղ ա յ 20, ըստ հ ա ս ա կ ի 9—14 տ., ա ղ ջ ի կ 3. ըստ հասակի 10—12-ը. ընդամենը 23։ Բոլորը 60 հ ո գ ի։ Կարմրուկ հիւանդութիւնից Ա. բաժանմունքից մահացել են 3 հոգի։

Աղջիկների թուի սակաւութիւնը պատճառաբանւում է երկու կերպ. նախ՝ մեր գիւղերում դեռ լինում է այն սխալ կարծիքը՝ թէ աղջիկը չը պէտք է կարդայ, որովհետև կարդալով այլասերւում է և երկրորդ՝ երկիւղով են վերաբերւում դէպ ուսուցիչները, անհիմն և անիմաստ ենթադրութիւններ ունենալով. առաջ դպրոցում կային 18 աղջիկ, այժմ 5։

Ըստ ծրագրի առարկաներն անցել են ամբողջութեամբ, միայն թէ իրագիտութիւնը միացուած է եղել լեզուի դասերին և այդ շատ հասկանալի պատճառներով։

Տարուայ ընթացքում յառաջադիմութիւն են ցոյց տուել.

Ա. բաժ.—27 }
Բ. » —18 } մնացել են 12 հոգի։

Դպրոցական տարուայ ընթացքում եղել են երկու աշակերտական հանդէս, երեք զբօսանք։ Դպրոցի մուտքն էր։

Մ ու տ ք՝ Կ. Հ. Բ. Ընկերութիւնից 300 ռ., ծխական տուրք 150 ռ., եկեղեցուց 70 ռ., թոշակներից 200 ռ., նուէրներ 25 ռ., ընդամենը 745 ռ., իսկ ելք՝ ուսուց. ռոճ. 525 ռ., լուսաւորութ. 15 ռ., ծառայ 30 ռ., թեմակ. տուրք 10 ռ., գիւանի ծախք 15 ռ., նկարների (նուէր) 55 ռ., լրագրեր 30 ռ., և այլն ծախսեր 65 ռ., ընդամէնն է 745 ռ.։

Դպրոցը հանդիսանում է ազգային լեզուի տարածման միջոցը։

Դպրոցի շնորհիւ ժողովուրդը գիտակցութեան է եկել, որ թէ անասնապահութիւնը, թէ երկրագործութիւնը և թէ գիւղատնտեսական այլ ճիւղերը կարելի է զարգացնել, աւելի օգտաւէտ դարձնել ուսման միջոցով։

Ժողովուրդը գիտակցութեան է եկել, որ դպրոցն է աւանդում ազգի անցեալ փառքը ու վառ պահում այն ամենը, ինչ որ ազգային է ու հարազատ հայրենի և տեղեակ պահում աշխարհի անցուդարձին։

Դպրոցն է վերջապէս, որ «Հայ» Անունը վառ է պահում հայ սրտերում։

Ժողովրդի ուսման ծարաւը սաստկացել է։ Այժմ ժողովուրդն աւելին է ուզում, բայց ոյժ չունի ձեռք բերելու։ Ճակատէնը, որ 150-ից աւել աշակերտ կարող է տալ, այսօր 60 է տալիս։ Անհրաժեշտ է դպրոցը երկդասեանի վերածել, որպէսզի բոլորն օգտուել կարողանան։ Իսկ դրան հասնելու համար նախ պէտք է Ճակատէնի օտար և բնիկ ունեւորները մտածեն և յետոյ Կ. Հ. Բ. Ընկերութիւնը։

Պահպանենք մեր տարաբաղդ ազգի գոյութիւնը ու ճամբայ ցոյց տանք զաւակացուն դէպի լոյսը, դէպի քաղաքակրթութիւնը։

Ղափան, 7 մայիսի. Գայեաստա

---

## ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ

### ԿՏԱԿ ՀԱՆԳՈՒՑԵԱԼ ՆԻԿՈՂԱՅՈՍ ՄԻՐԻՄԱՆԵԱՆԻ

1915 թուին, նոյեմբերի 10-ին ես ի ներքոյ ստորագրեալ Նիկողայոս Գրիգորեան Միրիմանեանս գտնուելով առողջ դատողութեամբ և յիշողութեամբ, իմ մահից յետոյ յայտարարում եմ հետևեալ իմ կամքը—ա ռ ա ջ ի ն. ինձ պատկանող՝ 1) Թիֆլիսի առեւտրական բանկի 17 ակցիաները, որոնցից երեքը գրաւ են դրուած Ազով-Դոնեան առեւտրական բանկում վեց հարիւր ռուբլու գումարի, 2) Նախկին Վարդան Դանիէլեան Լիսիցեան ակցիոներական ընկերութեան ներկայ «Թիֆլիսի առաջին մասնաւոր լոմբարդ»-ի ակցիաները, 3) երկու մուրհակ իւրաքանչիւրը հինգ հարիւրական ռուբլու, ընդամենը մի հազար ռուբլու, դերձակ Աբրահամ Թարասովիչ Ֆիշերի անունով, 4 ամիս ժամանակով, սկսուած 13-ից օգոստոսի և 16-ից սեպտեմբերի 1915 թուի, 4) Թիֆլիսի գաւառի Կոջոր ամարանոցում, Շտաբի և հայոց եկեղեցու վերև գտնուած իմ ամարանոցի կալուածքի վաճառումից գոյացած գումարից ստացուելիք մնացորդը կտակում եմ իբրև սեփականութիւն Կովկասի Հայոց Բարեգործական Ընկերութեան։ Ե ր կ ր ո ր դ. Բոլոր վերոյիշեալ ակցիաները պահւում են ճարտարապետ Աղէքսանդր Աղէքսանդրեան Մելիք-Բէգլարեանի մօտ։ Ե ր ր ո ր դ. Թիֆլիսի Կանոնիրսկի փողոցի № 1 տունը գտնուած իմ բոլոր տնային կահ-կարասիները խնդրում եմ իմ կտակակա-

տարիներից ծախել և վաճառումից գոյացած գումարը տալ յօգուտ նոյն Հայոց Բարեգործական Ընկերութեան: Չ ո ր ր ո ր դ, Տիրամօր տոհմական պատկերը ճրագով նուիրում եմ Թիֆլիսի Ջիգրաշէնի եկեղեցուն: Հ ի ն գ ե ր ո ր դ. Դրամները, որ գտնւում են Կենտրոնական № 144 խնայողական դրամարկղում պոստի և հեռագրական գրասենեակին կից՝ № 46388 գրքոյկով, ես նուիրում եմ իմ քոյր Սոֆիա Գրիգորեան Ալադաղեանին: Վ ե ց ե ր ո ր դ. Իմ այս կտակի կտակակատար նշանակում եմ քաղաքային ճարտարապետ Ալէքսանդր Ալէքսանդրեան Մելիք-Բէգլարեանին և երդուեալ հաւատարմատար և Սամսոն Ստեփանեան Յարութիւնեանին: Ե օ թ ն ե ր ո ր դ. Խնդրում եմ ինձ թաղել հասարակ պարզ ձևով Վերայի գերեզմանատան (մեր) տոհմային դամբարանում: Թաղման և հոգեհանգստի կարգերը կատարելու համար խնդրում եմ հրաւիրել Ջիգրաշէնի քահանայ հայր Զաքար Զարդեղեանին: Ո ւ թ ե ր ո ր դ. Հայոց Բարեգործական Ընկերութեան վարչութիւնից խնդրում եմ իր վրայ վերցնել իմ թաղման հոգսը և նրա համար եղած ծախսերը զեղչել իմ կտակած կարողութիւնից: Կտակարար Նիկողայոս Գրիգորեան Միրիմանեանի խօսքերը գրի առաւ Մարիա Ֆէոդորովնա Ֆիլիպովսկայա:

***

Ն Ո Ւ Է Ր Ն Ե Ր

Կ. Հ. Բ. Ը ն կ ե ր ո ւ թ ե ա ն

Կ. Հայոց Բ. Ը-թեան Խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է պ. Մկրտիչ Քալանթարեանից դպրոցական նպաստ 600 ռ.:

***

Բժ. Բ. Աղասարեանից յօգուտ Ընկ. աշակերտ. ճաշարանի, իր քենակալ՝ երդուեալ հաւատարմատար Գերասիմ Եակուլեանցի դագաղի վրայ պսակ դնելու փոխարէն 25 ռ.:

***

Կ. Հ. Բ. Ը.-թիւնը շնորհակալութեամբ ստացաւ Պետրոգրադի Հայոց եկեղեցիների Խորհրդից գիւղական դպրոցներին նպաստ—2000 ռ.:

***

Մ. Ալիխանեանից մշտական անդամութեան համար 100 ռ., դպրոցական տարեկան նպաստ 300 ռ.:

***

ՀԱՅԿ. ԿԵՆՏՐ. ԿՈՄԻՏԷԻ ՍՏԱՑԱԾ ԳՈՒՄԱՐՆԵՐ

1. Դեղորայք վաճառող Կովկասեան Ընկերութիւնից նուէր փախստականների օգտին 5.000 ռ.:

2. Կովկասեան ճակատի փախստականների գործերի գլխաւոր լիազօր գեներալ Վ. Մ. Թամամշեանից Վանի շրջանի համար սերմացու և լծկան գնելու հաշուից—60.000 ռ.:

3. Նոյն գեն. Վ. Մ. Թամամշեանից լրացուցիչ փոխադրութիւն տրանսպորտ կազմելու համար Իգդիրից Վան 21,000 ռ.:

***

Գեներալ Թամամշեանի կարգադրութեամբ տրուած Կ. Հ. Կենտ. Կոմիտէին կենսամթերքների շտեմարաններին յատկացուած 900,000 ռուբլուց նորից 200,000 ռ.:

***

Կովկ. Հ. Կենտ. Կոմիտէն որոշել է բացել որբանոցներ. Ախալքալաքում—200, Ախալցխայում —100, Երևանում 300 որբի համար, ինկատի առնելով այն հանգամանքը, որ Կովկաս են գալիս փախստական երեխաների նորանոր շարքեր:

***

Հայրենակցութեան ներկայացուցիչ պ. Ա. Սաֆրաստեանը ամսիս 26-ին զեկուցեց Կ. Հ. Կ. Կոմիտէին, որ Թիֆլիսի գաղթականները ուղարկւում են Նախիջևանի գաւառը այնտեղի տափարակներում բնակեցնելու, որտեղ մալարիան սպառնում է գաղթականների մէջ մահուան ճարակը: Պ. Սաֆրաստեանը խնդրեց Կոմիտէի միջնորդութիւնը, որը և յանձն առաւ Կոմիտէն:

***

Ղզլարի Կ. Հ. Բ. Ընկ. ճիւղը դիմել է Հ. Կենտր. Կոմիտէին, որ այնտեղ ապաստանուած 28 որբերին անհրաժեշտ է տեղափոխել այլ տեղ, եթէ չեն ուզում մանուկներին զոհել Ղզլարի մալարիային: Կոմիտէն որոշել է առայժմ տեղափոխել նրանց Թիֆլիս:

***

ՍԱՍՈՒՆԻ ԼԵՌՆԵՐՈՒՄ ԱՊԱՍՏԱՆՈՒԱԾ 4000 ՀԱՅ

Վերջին օրերս պ. Անդրանիկը, որ Թիֆլիսումն է, հեռագիր ստացաւ իր օգնականներից՝ Մուրադից, Սեպուհից և Սմբատից, որ Սասունի լեռներում պատսպարուած են մօտ 4000 սասունցի, որոնց ազատման համար հարկաւոր է 10,000 ռ.: Այդ առթիւ տեղի ունեցած Թիֆլիսի փախստականներին օգնող միացեալ հայ կազմակերպութեանց խորհրդակցութիւնը որոշեց՝ անմիջապէս փոխադրել գեներալ Վ. Մ. Թամամշեանի միջոցով Վան, շրջանապետ Տերմենին պահանջուած գումարը՝ յանձնելու պ. Անդրանիկի ղրկուած օգնականներին և Վանում գտնուող պ. պ. Ս. Մալխասեանին և Համբարձումեանին՝ դրամը իր նպատակի համար գործադրելու: Հայ. Կենտր. Կոմիտէն յատկացրեց 7000 ռ., իսկ «Նպաստամատոյց» Ընկերութիւնը՝ 3000 ռ.:

***

ՀԱՇԻՒ

ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՆԵՐԻՆ ՆՊԱՍՏՈՂ ԲԱԳՈՒԻ ԿՈՄԻՏԷԻ ԳԱՆՁԱՐԱՆՈՒՄ ՍՏԱՑՈՒԱԾ ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐԻ, 1915 Թ. ՆՈՅԵՄ. 1-ԻՑ ՄԻՆՉԵՒ ԴԵԿՏ. 31-Ը

Նոյեմբեր և դեկտեմբեր ամիսների ընթացքում մտել է Բագուի Կոմիտէի գանձարանը 23,913 ռ. 73 կ., իսկ օգոստոսի 20-ից մինչև նոյեմբերի 1-ը ստացածների հետ միասին 54,562 ռ. 17 կ.:

—

Նոյն Կոմիտէն ստացել է զանազան անձերից և հիմնարկութիւններից 1915 թ. սեպտ., հոկտ., նոյեմբ. և դեկտեմբ. ամիսների ընթացքում գաղթականների որբանոցների օգտին 11,141 ռ. 70 կ.:

---

ՎԵՐՋԻՆ ՀԵՌԱԳՐԵՐ

Կ. Հ. Կ. ԿՈՄԻՏԷԻՆ

X.—Տ է ր-Մ ի ն ա ս ե ա ն ը

Զօրեանը հեռագրում է, որ ինքը 131 որբի հետ անփորձ հասաւ Ալաշկերտ: Այսօր ուղարկուեց Սարիղամիշ 67 որբ ուղեկցութեամբ Գրիգորեանի և Լալայեանի: Խնդրում եմ կարգադրեցէք կանխապէս տեղ պատրաստել որբերի համար և յայտնել Սարիղամիշ Գրիգորեանին ու Բեգահմետ Զօրեանին: Դեղորայքը և ապրանքները ուղարկեցէք Սարիղամիշ: Խնուսում մնում են 50 որբ: Շուտով սպասում

է 150 որբ։ Փոքր խմբերով հաւաքւում են Բիթլիս և Մուշ նոր գաղթական կանայք և երեխաներ։

—

X...—Գամարեանը

Խնուսի շրջանում գտնուող Մուշից գաղթածները ենթարկուած են սովի։ Բազմութեամբ գնում են դէպի Ալաշկերտ։ Այստեղ են հասել 3 օգնական։ Քաղաքների Միութեան ներկայացուցչի հետ միասին կազմակերպել ենք երկու թռուցիկ խումբ, որոնց կառավարիչն է Տէր-Գէորգեանը։ Վաղը նա ճանապարհւում է Բիթլիս։

—

4-րդ զօրագնդի շտաբից—Գամարեանը։

Թրքական գիւղ Գիւմ-Գիւմում նորից գտնուած են հայ որբեր. իմ այստեղ ապրելուս 15 օրուայ ընթացքում ոչ մի փախստական այստեղով չի անցել, ուստի փակել եմ սննդատու կայանը։ Ուրիշ շրջաններից Գիւմ-Գիւմ եկած փախստականներին տեղափոխել եմ Խնուս։ Մեր գործիչներից Ռուբէնը հիւանդացել է բծաւոր (СЫПНОЙ) տիֆով և գտնւում է Քաղաքների Միութեան հիւանդանոցում։ Ճգնաժամը անցել է։ Ալաշկերտի ուղղութեամբ ուղարկուած է 130 որբ, իսկ 80-ը մնում է այստեղ։ Ամեն օր գալիս են նորերը։

—

X...-ից—Տէր-Գէորգեանը։

Ճանապարհուեցի Բիթլիս։ Եթէ բեռնակիր փոխադրութեան համար յատկացրած 3000 ռուբլին չէք ուղարկել, փոխադրեցէք այժմ Խնուս Գամարեանի անունով։

—

Երեւանից—Խորէն եպիսկոպոսը։

Արտակարգ ժողովում որոշել ենք բացել որբանոց 300 որբի համար։ Խնդրում եմ փող փոխադրէք։

—

Ախալցխայից—Կ. Հ. Բ. Ընկ. նախագ. Տեխմիշեանը։

Կ. Հ. Բ. Ընկ. բաժանմունքը տեղիս հայ կազմակերպութիւնների մասնակցութեամբ որոշել է բանալ Ախալցխայում մի որբանոց հարիւր հոգու համար։ Սպասում ենք ձեր կարգադրութեան։

—

(Անցեալ շաբաթից մնացած հեռագիրներ)

Ջանուղչայից—Բաղալեանը։

Վանից եկել են տեղս 58 որբ։

—

Նոր-Բայազէդից—Հ. Բ. Վարչութիւնը։

Որբանոցի համար ի նկատ ունենք շինութիւն մինչև երկու հարիւր հոգու։ Եթէ համաձայն էք՝ հեռագրեցէք վարձենք և կահաւորենք։

Մուշից—Կարասասունի։

Սասունից, Խութից այստեղ են հասել 500 փախստական։ Սպասում ենք մեծ քանակութեան Մուշից և Դիարբեքիրի շրջանից։ Շարունակում ենք օգնութիւնը։ Կարիքը մեծ է։

—

Մուշից—Կարասասունի։

Կովկաս տեղափոխելու համար մեր որբանոցից տուել ենք Քաղաքների Միութեան 100 որբ։

# Քրոնիկոն

Գասպար Յ. Մարգարեանը, որ մեր մեկենասներից է, յատկացրել է 7,000—10,0000 ռ. Լէօի եռահատոր Հայոց պատմութեան հրատարակութեան, որի տպագրութիւնը շուտով սկսուելու է։

⁂

Բարձր. Տ. Յուսիկ վարդ. Զոհրաբեանը, որ իր կրթութիւնն ստացել է Էջմիածնի ճեմարանում, ապա Գերմանիայում և երկար տարիներ Սինոդի անդամի ու հայրապետական դիւանի դիւանապետի պաշտօններ վարել, ներկայումս էլ կրօնի դասատու Մոսկուայի Լազարեան ճեմարանում, պետական քննութիւն է տուել և ստացել իրաւաբանութեան առաջին կարգի աստիճան։

⁂

Նահանգապետը թոյլ է տուել Ա. Ի. Շանշիաշւիլուն հրատարակելու Թիֆլիսում վրացերէն գրական-քաղաքական մի օրաթերթ «Սաքարթվելօ» (Վրաստան) անունով։

⁂

Այսօր Հաւլաբարի աշխատանքի տանը կայանալու է «Մեղու» ընկերութեան տարեկան ընդհանուր ժողովը։

⁂

Գոլովինեան պողոտայի վրայ, Արամեանի տանը, բացւում է ժամանակաւոր հիւանդանոց, որտեղ տեղափոխւում է վիրաւոր զինուորներին օգնող Թիֆլիսի կենդրոնական Կոմիտէի հիւանդանոցների կենտրոնական դեղապահեստը։

⁂

Պետրոգրադի պարսկական միսիայի քարտուղար Միրզա Մեհտի խան Մօկարրամոտ Դովլէն նշանակուած է Թիֆլիսի ընդհանուր հիւպատոս։

⁂

Օրթաճալայի կամուրջը շինուած վերջացուած է արդէն։ Երթևեկութիւնը կը բացուի մօտ օրերս։

⁂

Մայիսի 22-ին Մեծ Ղարաքիլիսա աւանում տօնուեց 70 ամեայ Խորէն ա. ք. Խաչատրեանի ուսուցչական և հասարակական գործունէութեան 40-ամեակը։

⁂

Միջագետքի կռիւներում սպանուել է Դաւիթ խան Աւան-Իւզբաշեանի որդի երիտասարդ Գուրգէն Աւան-Իւզբաշեանը 24 տարեկան։

⁂

Գորուայ գաւառի Կվիշ-Խէդի բնակիչները դիմել են Թիֆլիսի նահանգապետին և խնդրել՝ թոյլ տալ բանալու սպառողական ընկերութիւն «Սաճիրօէբա» (կարիք) անունով։

⁂

Թիֆլիսի նահանգապետը իրաւունք է տուել Սարրա Գլոնտիին Թիֆլիսում հրատարակելու ամենօրեայ լրագիր «Սախալխօ Շրօմա» (Ժողովրդական աշխատանք) անունով։

⁂

Թիֆլիսի քաղաքային ծառայողների «Էկոնոմիա» ընկերութիւնը ելէքտրաքարշի պարտիզում սպառողական խանութ է բաց անում՝ ելէքտրաքարշի բազմաթիւ ծառայողների համար։

⁂

*Լեւոն Մանթաշեանը 20,000 ռ. է նուիրել Հ. Գիւղատ. և Տնայնագործ. Ընկերութեանը։*

***

*Յունիսի 4-ին Թիֆլիսում գումարուելու է Քաղաքների Միութեան Կովկասեան Կոմիտէի անդամների ընդհանուր ժողովը, որին մասնակցութեան են հրաւիրուած տեղական բոլոր կոմիտէների ներկայացուցիչները։*

***

*Վրաց մէջ կազմուած է մի նոր ընկերութիւն «Յոյս» անունով, որի նպատակն է՝ օգնութեան հասնել երիտասարդ մարդկանց՝ աշակերտների, ուսանողների և սկսնակ գրողների։*

***

*Թիֆլիսում հիմնւում է «Թիֆլիսի 2-րդ աշխատանքի տուն», որը պէտք է աշխատանք հայթայթի անգործ մարդկանց և կանանց։*

***

*Մայիսի 24-ին Փոխարքայի քաղաքաց. մասի օգնական իշխ. Օրլովի նախագահութեամբ և նրա բնակարանում կայացաւ Կովկասեան բժշկավայր ամարանոցատեղերը («կուրորտ») ուսումնասիրող Ընկերութեան Խորհրդի նիստը։ Խորհրդի քննութեան առաջարկուած էին զեկուցումներ Ընկերութեան նիւթական միջոցների, Ախթալայի ցեխաբուժարանի և Աբասթումանի ու Դիլիջանի մասին, իբրև բժշկական նշանակութիւն ունեցող ամարանոցատեղերի։*

*Առաջին հարցի մասին որոշուեց դիմել փինանսների նախարարին և խնդրել նշանակել ընկերութեան նպաստ տարեկան 30.000 ռ., Կովկասի ջերմուկ ամարանոցատեղերը ուսումնասիրելու համար տասը տարուայ ընթացքում։ Այս խնդրի պաշտպանութեան համար Փոխարքան խոստացել է իր աջակցութիւնը։ Ախթալայի մասին, որը գտնւում է Կախէթիայում, Գուրջան գիւղում, որոշուեց չը ձեռնարկել այդտեղ բուժարան հիմնել ընկերութեան միջոցով, այլ միայն աջակցել կալուածատէրերին, եթէ նրանք իրենք ցանկանան այդտեղ բուժարան հիմնել։*

*Աբասթումանի և Դիլիջանի մասին զեկուցումները յետաձգուեցին առաջիկայ երկուշաբթի։ Այդ երկու տեղերի ուսումնասիրութեան համար անցեալ տարուանից կազմուած են առանձին մասնաժողովներ, որոնց նախագահները՝ պ. Մ. Գրուզենբերգը, պ. Ս. Յարութիւնեանցը կանեն զեկուցումներ՝ առաջինը Աբասթումանի, իսկ երկրորդը Դիլիջանի մասին։*

***

*Կ. Հ. Բ. Ը.-թեան որբանոցի սանուհիներից այս տարի աւարտեցին իրենց ուսումը Գայիանեան դպրոցում երկու հոգի։*

***

*Ռեանդուզում սպանուած երկրորդ հայ կամաւորական խմբի հրամանատար Քեռու թաղումը տեղի կունենայ Թիֆլիսում, Խոջիվանքի գերեզմանատանը, այսօր, կիրակի, մայիսի 29-ին։*

***

*Կ. Հ. Բ. Ընկ. կից պարենաւորման Կոմիտէն փախստականների մթերքների պահեստների համար գնել է 250 վագոն ալիւր, 14 վագոն շաքար, 2 վագոն լուցքի, 2 վագոն սապոն և այլն։ Արդէն սկսուել է իրերի տեղափոխումը պահեստների վայրերը։*

***

*Մայիս ամսուայ ընթացքում կատարուեցին երկու համակրելի յոբելեան։ Մեծ-Ղարաքիլիսայում տօնեցին 40 ամեայ մանկավարժական և հասարակական գործունէութիւնը Խորէն աւագ քահանայ Խաչատրեանի, իսկ մայիսի 21-ին Բաքւում կատարեցին տեղական ուսուցչական խմբի անդամ օրիորդ Թագուհի Մամիկոնեանի 25 ամեայ մանկավարժական գործունէութիւնը։ Կ. Հ. Բ. Ընկ. Խորհուրդը երկու յարգելի յոբելեարներին շնորհաւորեց հեռագրով։*

***

*Մայիսին կայացած Կովկասի Հայուհեաց Բարեգ. Ը.-թեան ընդհանուր ժողովում վարչութեան անդամներ վերընտրուեցին հին անդամները. տ.տ. Ն. Ղամբարեան, Մ. Ծուրինեան, Շ. Օզանէզեանց և Ե. Յարութիւնեանց։*

# Արտաքին տեսութիւն

## † ԼՈՐԴ ԿԻՏՉԵՆԵՐ

*«Ծովային արհաւիրքների շաբաթը» փակուեց Անգլիայի համար մի կորստով, որ մոռացնել պէտք է տայ նրան իր բոլոր նաւային կորուստներն ի մի առած։ Մեր խօսքը Լորդ Կիտչեների մահուան մասին է*), որի գոյժը հենց նոր հաղորդեց հեռագրական գործակալութիւնը։ Այս հարուածն այնքան ծանր է, որ սառնարիւն անգլիացին էլ պէտք է ցնցուի։ Եւ իրօք, այն անգլիացին, որ ստոյիկեան պաղարիւնութեամբ հաշւում էր վերջին ծովային ճակատամարտին իր կորցրած ռազմանաւերն ու շրջում լրագրի թերթը՝ այժմ, ինչպէս հեռագիրն է հաղորդում, Կիտչեների մահուան լուրն առնելով «բառիս բուն իմաստով շշմել է»։ Այդ շատ հասկանալի է, ի հարկէ.—կորցրած ռազմանաւերի տեղ մի քանի ամսում կարելի է նորերը շինել. սակայն Կիտչեների պէս մարդիկ առաջ բերելը տասնամեակների գործ է։*

*Լորդ Կիտչեներն Անգլիայի ամենատաղանդաւոր զինուորականն էր և միաժամանակ ամենահմուտ դիւանագէտներից մէկը։ Այս համարումը նա ձեռք է բերել իր երկարատև պետական գործունէութեամբ և վարած պատասխանատու պաշտօնների շնորհիւ։ Նրա դիւանագիտական-զինուորական ասպարէզն սկսւում է 22 տարեկան հասակից (ծնուել է 1850 թ.) և տեւում մինչև իր կեանքի վերջին օրերը։*

*Այս 44 տարուայ ընթացքում Կիտչեները մի քանի անգամ ամենապատասխանատու պաշտօնների է կոչուել։ 1892 թ. նա նշանակւում է եգիպտական զօրքի ընդհանուր հրամանատար և ղեկավարում Սուդանի դէմ գործող արշաւախումբը**)։ Սուդանի կռիւներում տեղի ունեցաւ 1898 թուին մի միջնադէպ, որ շատ կարեւոր հետեւանքներ ունեցաւ անգլօ-ֆրանսական յարաբերութիւնների տեսակէտից։ Ֆրանսացիները օգտուելով սուդանցիների և անգլիացիների պատերազմից՝ գրաւել էին եգիպտական Սուդանի Ֆաշոդա քաղաքը, որ գտնւում է Նեղոսի ափին։ Կիտչեները ստիպեց ֆրանսացիներին յետ քաշուել այդ քաղաքից և այդ բանի վրայ երկու պետութեանց յարաբերութիւնները սաստիկ լարուեցին։ Սկսուեցին մի շարք դիւանագիտական բանակցութիւններ, որոնց ընթացքում վերացան շատ թիւրիմացութիւններ և պարզուեց երկու պետութեանց շահերի ներդաշնակութիւնը համաշխարհային քաղաքականութեան բոլոր աչքի ընկնող խնդիրներում։ Այստեղից առաջացաւ մի նկատելի մերձեցում Անգլիայի և Ֆրանսիայի միջև, որ աստիճանաբար զարգանալով հանգաւ Էդուարդ VII-ի օրով հաստատուած հռչակաւոր «enten te cordiale»-ին։*

*Այս արշաւանքից յետոյ զօրապետի աստիճան և Լորդի տիտղոս ստացած Կիտչեները 1899 թ. վերջերին ուղևորւում է հարաւային Աֆրիկա՝ Տրանսվաալ և Օրանժ հասարակապետութեանց դէմ գործող բանակի մէջ աշխատելու համար։ Սկզբում նա ընդհ. հրամանատար Ռոբերտսի սպայակոյտն (շտաբն) է կառավարում,*

---

**) Այս մասին տես այսօրուայ համարի համաշխարհային պատերազմի տեսութիւնը։*

***) Աֆրիկայի կենտրոնական մասում է գտնւում, Սահարայից հարաւ։*

քիչ յետոյ նրան օգնական է նշանակւում, իսկ վերջը իրօք նրան փոխարինում է։ Այս պատերազմը, որ Անգլիայի ռազմական վարկի տեսակէտից մի խիստ վտանգաւոր ձեռնարկ էր, յաջողութեամբ վերջացաւ գլխաւորապէս շնորհիւ Կիտչեների ռազմական տաղանդի և հաստատակամութեան։

Սրանից յետոյ իշխանական տիտղոս ստանալով Լորդ Կիտչեները նշանակւում է նախ Հնդկաստանի զօրքերի հրամանատար և ապա, երբ Եգիպտոսում ծայր է տալիս ազգային շարժումը՝ Եգիպտոսն Անգլիայից անջատելու ակնյայտ ծրագրով նա փոխադրւում է Եգիպտոս կառավարչի պաշտօնով։ Երկու պաշտօնն էլ նա վարում է արտակարգ հմտութեամբ։

Սակայն Կիտչեների ռազմական տաղանդն իր ամենափայլուն արտայայտութիւնը ներկայ համաշխարհային պատերազմի ընթացքում է գտնում։ Պատերազմի սկզբից նշանակուելով զինուորական նախարար՝ նա Անգլիայի ռազմական կարողութիւնները ցամաքի վրայ հասցրեց աներևակայելի չափերի։ Այն ժամանակ, երբ ամենահմուտ ռազմագէտները պատերազմի համար որոշում էին շատ-շատ մէկ տարի, իսկ ֆինանսագէտներն ու տընտեսագէտները մի տարի պատերազմելը համարում էին անհնարին մի բան՝ Լորդ Կիտչեները Անգլիայի զանազան մասերում զօրանոցներ էր վարձում ապագայ զօրքերի համար 4—5 տարուայ պայմանաժամով, և ինտերվիւների մէջ հրապարակօրէն յայտարարում, որ այս պատերազմն առնուազն երեք տարի տևելու է։ Այս համոզմունքով էլ նա շարժման մէջ դրեց անգլիական կեանքի բոլոր լծակները՝ սկսած կառավարութիւնից մինչև պարլամենտ և պարլամենտից մինչև բանուորական միութիւնները։ Սկսուեց մի աննախընթաց պատերազմական եռ ու զեռ, որի արդիւնքն արդէն հրապարակի վրայ է.—Անգլիան այսօր ունի մօտ 4 միլիոն զօրք, դրան համապատասխան ռազմամթերք, փոխադրութեան միջոցներ և այլն և այլն։

Սակայն այսու չի սահմանափակւում լորդ Կիտչեների դերը համաշխարհային պատերազմում։ Նա ամենամեծ ազդակներից մէկն է եղել դաշնակիցների ցրուած ուժերն ու գործողութիւնները ի մի ձուլելու և կենտրոնական պետութիւններին դաշնակիցների միահամուռ ուժը և միասնական կամքը հակադրելու։

Իր քաղաքական հայեացքներով Լորդ Կիտչեները խիստ՝ կապ-կապոյտ պահպանողական էր, blue tory, ինչպէս անգլիացիք են ասում։ Բայց այս հանգամանքն արգելք չէր հանդիսանում, որ նա պատասխանատու պաշտօնների կանչուէր ազատամիտ մինիստրութեանց կողմից։

Լորդ Կիտչեներն իբրև զինուորական գործիչ Անգլիայում դասւում է Նէլսոնի և Ուէլլինգտոնի կողքին։ Նրա ռազմական տաղանդին ծանօթ մարդկանց համար տարակոյս չի կարող լինել, որ վերոյիշեալ համադրութիւնը պատիւ է բերում ոչ միայն Կիտչեներին, այլ և Նէլսոնին և Ուէլլինգտոնին...

Անգլիացին չէր կարող այս ծանր կորստի հանդէպ չը շըշմել։

*Ա. Ջամալեան*

---

# ՏԱՃԿԱՀԱՅԵՐ

## ՏԱՃԿԱՀԱՅԱՍՏԱՆԻ ԽՆԴԻՐԸ

—

Ամէն անգամ, երբ խօսք է ընկնում—տալ թէ չը տալ տաճկահայերին ինքնավարութիւն, Հայաստանը հովանաւորող պետութիւններին—Ֆրանսիային, Անգլիային և Մեծ Ռուսաստանին արիւնռուշտ սուլթանի հետևող երիտասարդ թիւրքերը ակնարկում են, որ Հայաստանը մի աշխարհագրական անուն է, որովհետև Հայաստան ասած երկրում կան քիւրդեր, թիւրքեր և չը կան հայեր, որոնք մասամբ գաղթել, տեղահան են եղել, մասամբ կոտորուել բառի բուն նշանակութեամբ։ Այդ հարցին է նուիրուած անգլիական Le Daily Chronicle թերթի հետևեալ տողերը, որ առնում ենք ապրիլի 25-ին №11749 ֆրանսերէն «Matin» թերթից.

«Այժմ, երբ ռուսները դարձել են Հայաստանի սարահարթի կատարեալ տէրը, հայոց հարցը ուժգնօրէն նորից հրապարակ եկաւ։

Զարհուրելի տմարդի է տաճիկ-գերմանական քաղաքականութիւնը հայերի վերաբերմամբ. աքսորը, տեղահանութիւնը, գաղթականութիւնը և կոտորածները ի հարկէ մեծ չափով նուազցրել են հայ բնակիչների թիւը Հայաստանում։ Ճիշտ է, հայերի թիւը պակասել է, բայց նոյն հայկական վիլայէթներում խիստ պակասել են վերոյիշեալ պատճառներով և թիւրքերի թիւը։

Փախստականների և գաղթած հայերի նորից վերադարձը իրանց հայրենիքը հանդիպում է ահագին դժուարութեանց, որովհետև մինչև այսօր յայտնի չէ նոյն իսկ մօտաւորապէս՝ որտե՞ղ կենդանի մնացած հայեր կան, և որքա՞ն է նրանց թիւը։ Ռուսները իրանց առաջխաղացման ժամանակ գտել են սարերում ապաւինած կենդանի մնացած հայեր։ Եթէ այդ հայերի թուին աւելացնենք և այն հայերին, որոնք դեռ ևս ողջ և առողջ են,—թէպէտև ամենադաժան և ամենասարսափելի պայմաններում, մի իրողութիւն, որ մեզ յայտնի է ամերիկացի միսիոնէր Էրզրումում պ. Ստէպլէտոնի նամակներից,—հայերի թիւը բաւականին աճում է։

*Տ. Աթարէգեան*

---

Մեզ տեղեակ աղբիւրից յայտնի է, որ թուրքերը Բուլղարիոյ անկախութեան առաջն առնելու համար օգտուելով Հայոց պատուի, կեանքի և ընչքի ապահովութեան ձգտումներից, նպաստեցին, որ Տաճկահայոց հարցը Բեռլինի վեհաժողովին հասաւ։

Այս իրողութիւնից յետոյ՝ ուշքի գալով աշխատեցին Եւրոպայում զանազան վարձկան գրիչների, յատկապէս հրէայ, հունգարացի հռչակուած Վամբերու[1]) ձեռքով համոզել քաղաքակիրթ աշխարհը, որ հայերը Հայաստանում քիչ են, ռազմասէր չեն և թէ վերանորոգումներն արդէն սկսուել են։ Այս թրքամոլին՝ ժամանակին պատասխանել է P. Haikjean[2]), ինչպէս և Մինաս Չերազը իւր l'Arménie-ի մէջ։ Այնուհետև թիւրքերն ամէն անգամ միևնոյնը կրկնել են, կարծես թէ, եթէ հայերը հենց անչափ քիչ լինէին, իրաւունք չունէին պատուի, կեանքի և գոյքի ապահովութիւն պահանջելու։ Այս բոլորը մեզ բնաւ չէ զարմացնում, երբ թիւրքերն անդադար յեղյեղում են իբրև յանգերգ, այլ այն, որ եւրոպական անկաշառ մամուլն էս կարծես միևնոյն տեսակէտի վրայ է՞ուզում կանգնած լինել։

Կարդալով այս յօդուածը յիշեցի մեր հասարակական գործիչ և հրապարակախօս պ. Զալխուշեանի մօտհաս տարիուկէս առաջ «Кавказское Слово»-ի մէջ հրատարակած մի սրտառուչ և հոգեյոյզ յօդուածը, ուր ի միջի այլոց կռահում էր թէ ինչպէս Հայոց և նոյնիսկ ընդհանուր պատմութեան մէջ անօրինակ արհաւիրքներից յետոյ հաշուի պիտի առնուեն Հայոց թուի սակաւութիւնը։ Եւ ահա այս թուարկումն աւելի վաղ է սկսւում, երբ պատերազմի վերջալոյսի նշոյլները հազիւ նշողելու յոյսեր են երևում։ Եւ զարմանալին այն է, որ Daily Chronicle-ի պէս մի անգլերէն լրագիր և ֆրանսերէն Matin-ը, ուրեմն դաշնակիցները իրենց փոքրիկ դաշնակցի, ինչպէս կոչում են հայերին, թուահամարն ի հաշիւ են առնում սրանց բնաջնջող՝ թուրքերի, իրենց և հայի ոսոխի

---

[1]) Տես յատկապէս սորա „Münchener Allgemeine Zeitung 1890, № 224 և 225 յաւելուածը, որովհետև շատ ու շատ անգամ շահատակել ի նպաստ Թիւրքիոյ, թէև կեանքի վերջերում արդէն հրաժարուել և քարոզիչման էր եղել մեծ փադիշահ «արիւնկզակ» Համիդից սիրաշահուած և շոյուած գիտունը։

[2]) Deütsches Wochenblatt, 1891, № 29 («Die Armenische Frage») Berlin։

թշնամու թիւը, և սակաւ ինչ մխիթարում, որ ըստ Կարնի միսիոնէր Ստեպլէտոնի նամակների, հայերի թիւը բաւական աճում է»։

Մեզ թւում է այն ժամանակ, երբ Տաճկահայաստանի ինքնավարութեան խնդիրը կախուած էր ոչ միայն Ռուսաստանի, Անգլիոյ և Ֆրանսիոյ կառավարութիւններից, այլ և միւս պետութիւններից և մանաւանդ օսմանեան պետութեան վարիչներից, խնդրի այս կերպ ձևակերպումը, պատճառաբանութիւնը շատ հասկանալի էր, ուստի և հասկանալի հայերի այժմեան գազանական և ընդհանուր կոտորածները, եթէ չասենք բնաջնջումը օսմանցոց կողմից։

Սակայն երբ այժմ յոյս կայ դաշնակիցների վախճանական յաղթանակի, Տաճկահայաստանի ինքնավարութիւնը գլխաւորապէս, եթէ չասեմ միմիայն, դաշնակիցներից է կախուած, մի անգլիերէն և մի ֆրանսերէն թերթ այլ ձևով պիտի դնէին խնդիրը։ Մի՞թէ ժուռումուռ եղած Ալբանիան Աւստրիայի շնորհիւ չստեղծուեց։

Ամենևին չեմ կարող մոռանալ մի ֆրանսացու տպաւորութիւնները, որ յոյների ապստամբութիւնից մի քանի տարի անց, 1825-ին ճանապարհորդելով Յունաստանում և չհանդիպելով ոչ մի յոյնի, յատկապէս Պելոպոնէսում, գրում էր. ո՞ւմ համար են աշխատում—կռւում եւրոպացիք, երբ Յունաստանում յոյն չկայ։

Բայց երբ այն ժամանակուայ, ինչպէս և այժմեան միևնոյն դաշնակիցները, Ռուսաստանը, Անգլիան և Ֆրանսիան ստեղծեցին Յունաստանը միայն 300,000 յոյնով, Յունաստանը հետզհետէ աճեց, բազմացաւ և մեծացաւ։ Հայեր, հենց Տաճկահայեր, շատ ու շատ կան, հարիւր հազարներով, Ամերիկայում, Եւրոպայում (Բուլղարիա, Ռումինիա, Յունաստան) և Աֆրիկայում, Եգիպտոսում, որոնք միացած երկրում հետզհետէ ազատուողների հետ, եթէ հաշուենք Միջագետք և Ասորիք վտարուածները, միլիոնի կարող է հասնել, եթէ ոչ աւելի։ Սակայն էականը այս չէ, այլ որ Տաճկահայաստանի ինքնավարութիւնը ձեռնտու լինի դաշնակիցներին։ Միայն Եհովան չէր, որ կարող էր քարերից Աբրահամու որդիք յարուցանել, այլև աշխարհի հզօրները։

Սկայ

## ԹԱԼԱՀԱԹ-ԲԷՅԸ ՀԱՅԵՐԻ ՄԱՍԻՆ

«Բերլիներ-Տագեբլատտ»-ի Բալկանեան թղթակիցը տեսակցութիւն է ունեցել Ենւեր-փաշայի գործակից Թալահաթ-բէյի հետ, որ Հայաստանի վրայ խօսելով՝ ասել է.

—«Հայերին վիլայէթներից հեռացնելն անհրաժեշտութիւն էր։ Այն ժամանակ, երբ նրանց գաղթեցնում էին Միջագետք, նրանց վրայ յարձակուել են քիւրդերը և մի մասն սպանել։ Անցեալ տարուայ մարտին, Դարդանէլի կռիւների ժամանակ, նոյնպէս անհրաժեշտ համարուեց հեռացնել հայերին Կ. Պոլսից և շրջակայքից։ Կառավարութիւնը հրամայեց նրանց գաղթեցնել Զարի։ Բայց, դժբախտաբար, անպէտք պաշտօնեաները, որոնց վրայ դրուած էր այդ հրամանի իրագործումը, իրենց թոյլ են տուել անցնել իրենց իրաւասութեան սահմաններից»*)։

Այս ասելով՝ Թալահաթ-բէյը ձեռքով ծածկել է աչքերը, իրենից վանել ուզելով կոտորածների սարսափելի տեսարանները, և բացականչել է.

—Վերջապէս մենք բարբարոսներ չենք... Այդ տխուր անցքերի պատճառով ես անց եմ կացրել շատ անքուն գիշերներ։

*) Բոլոր ընդգծումները մերն են։ Գ. Օ.

Նոյն թերթի Պոլսի թղթակիցը հետևեալ խօսակցութիւնն է ունեցել Թալահաթ-բէյի հետ։

Թալահաթ-բէյն ասել է. «Հայերը ձգտում են խորտակել օսմանեան կայսրութիւնը։ Պատերազմի սկզբում ռուսների և թիւրքահայերի խորհրդակցութիւնը որոշել է, որ Կովկասի հայերը պէտք է կռուեն Թիւրքիայի դէմ, իսկ Անատոլիայի հայերը կ՚սպասեն մինչև ռուսների Անատոլիա մտնելը։

Խուզարկութիւնների ժամանակ հայերի մօտ գտնուեցին ռումբեր և հրացաններ։ Անհրաժեշտ էր ապստամբներին հեռացնել սահմանամօտ շրջաններից։ Հետագայում Դարդանէլի գործողութեան պատճառով, ցանկութիւն կար կառավարութիւնը տեղափոխել «Էսկի-Շէհիր», ուստի հայերին գաղթեցրին այս քաղաքի և Պոլսի միջև եղած շրջանից։ Կառավարութիւնը անմեղ է արտաքսուողների կոտորածի համար։ Առաջին կոտորածին, թիւրք հեծելազունդը պաշտպանեց քիւրդերից, որոնց պարագլուխները կախուեցին յետոյ։ Երկրորդ կոտորածին մեղաւոր են անպիտան պաշտօնեաները։

Թղթակիցը յայտնում է, որ Թալահաթ-բէյը վշտացած է այդ ցաւալի անցքերից, սակայն հայրենիքի բարիքը արդարացնում է այդ, շեշտում է գերմանացին։ Յետոյ թղթակիցը միանգամայն համաձայն է Թալահաթին, որ «անմեղ հայերին չէր կարելի զանազանել մեղաւորներից, որովհետև այսօրուայ մեղաւորները վաղը կարող էին յանցաւորներ լինել»։

«P. B.»

* * *

Ընդամենը մի քանի ամիս է անցել այն օրից, երբ Ենւեր-Թալահաթի հայակեր կառավարութիւնը ճիգ էր թափում ապացուցանել, որ Հայաստանում կոտորածի դէպքեր տեղի չեն ունեցել, որ այդ առթիւ տարածուած լուրերը առասպելներ են։ Իսկ այսօր, երբ ջարդերն անհերքելի իրողութիւն են, ոճրագործ Թալահաթները, այժմ լկտի ձևով բարդում են ամեն ինչ «անպէտք պաշտօնեաների» և «քրդերի» վրայ։

Տեղահան անել մի ամբողջ ժողովուրդ, ծեր, մանուկ, աղջիկ, թէ մի քանի հայի մօտ «ռումբեր ու հրացաններ» են գտնուել, այդ մի այնպիսի դժոխային դաւադրութիւն է, որին ընդունակ է միայն հայակեր տաճիկ կառավարութիւնը։

«Անհրաժեշտ էր ապստամբներին հեռացնել սահմանամօտ շրջաններից», ասել է Թալահաթը։ Ապա ծեր, կին, աղջիկ ու երեխայ, կոյր ու անդամալոյծ ինչո՞ւ քշուեցին. գիւղեր ու աւաններ ինչո՞ւ կրակուեցին, ի հարկէ նոյնպէս իբրև ապստամբներ։

Վերջապէս թիւրք կառավարութիւնը լաւ գիտէր երկար ու բարակ տարիների ընթացքում ծրագրած ոճրագործութեանց հետևանքը։ Թիւրք ամբոխն էլ հասկացաւ, որ եթէ հայերի շալակին դնում են իրենց կայքը և դուրս քշում, այդ յայտարարութիւն է պաշտօնական ջարդերի ու թալանների։

Բնորոշ է այն, երբ վայրենի Թիւրքիայի գազան նախարարը ասում է, թէ «առաջին կոտորածին թիւրք հեծելազունդը հայերին պաշտպանեց... երկրորդ կոտորածին մեղաւոր են անպիտան պաշտօնեաները»։ Մինչդեռ իրողութիւնն այնպէս է, որ կոտորածի առաջին դէպքին գտնուել են պաշտօնեաներ, որոնք խղճացել են անմեղ զոհերի վրայ և պաշտպանել, ուստի և պաշտօնանկ են եղել։ Եւ հետագայ դէպքերին կառավարութիւնը շրջապատել է հայերին այնպիսի թալանչի «պաշտօնականներով», կամ աւելի ճիշտ՝ «պաշտօնական թալանչիներով», որոնք կատարել են տիեզերական պատմութեան անլսելի և անլուր բարբարոսութիւններ ու գազանութիւններ։ Եւ այս բոլորից յետոյ անշուշտ թիւրք «կառավարութիւնն անմեղ է արտաքսուողների կոտորածի համար»։

Վերջապէս ասել, թէ «անմեղ հայերին չէր կարելի զանա-

զանել մեղաւորներից»... լրացնում է բարբարոսական և գազանական հակումներով հրճուող ոճրագործ Թիւրք կառավարութեան պատկերը, որի համար հայը յանցաւոր էլ չը լինի՝ պէտք է կոտորել, որովհետև հայ է*)։

Գ. Օ.

# ՄԱՀԱՄԵՐՁ

Մայր, տառապանքիս ժամերն են յետին...
Ահա երկնքի հուր-կաթսան եռաց,
Երբ արփի-շողեր արծաթեն գետին,
Մայր, պիտի գտնես խեղճ որդուդ մեռած։

Մնարիս վերև կեցեր ես, մայր իմ,
Ճակատըս շոյող քո ձեռքն է միթէ,
Կը տեսնե՞ս ինչպէս կը խամրիմ, կ'այրիմ,
Վերջին ժամերս են, մայր, որդուդ գիտէ...

Թախիծ կը կաթէ աչերէդ խոկուն,
Կ'երգես մանկութեանս օրերգը յուշիկ.
Շուտո՛վ, մայր, շուտով կը մտնեմ խոր քուն,
Երգէ որ քնեմ խո՛ր, մշի՛կ-մշի՛կ։

Մայր, ծնա՛ր... ծնա՛ր... բայց ինչո՞ւ ծնար,
Ա՛խ, չէ՞ որ չկան ծաղիկ, սէր, լուսին...
Օրրոցէն մինչև մահագուժ սնար
Միթէ վարկեան մ'էր վշտաբեկ ու սին...

Դէհ, մնաս բարեւ... դողդոջ եմ, անո՛ւժ,
Մահ-դալուկն իջաւ, ո՛հ, դէմքիս մարմար.
Գոցէ աչքերըս համբոյրովդ անուշ,
Եւ լաց, մայր, միայն... սուրբ Մեղքիդ համար...

Թիֆլիս

Ազատ-Վշտունի

# ՀԱՅՐԵՆԻՔ

Երբ որ լինի գարնանամուտ, նոր գարուն,
Կը բացմանան վտակներըդ, հայրենիք.
Շարիշար ցնծութեամբ երգով զուարթուն
Շարժւում են բանակներըդ, հայրենիք։

Օդըդ սիրուն, ջուրըդ սիրուն, դու սիրուն,
Պէսպէս գունով ծաղիկներըդ դալարուն,
Զեն դադարիր աշխատելուց օրն ի բուն,
Քո հարազատ մշակներըդ, հայրենիք։

Մարդիկ կուգան քու սարերըդ մանգալու
Իբր որսորդ եղնիկներըդ որսալու։
Երբ կրփոխեն երգը ուրախ կարդալու
Քո սգազգեաց սոխակներըդ, հայրենիք։

Դու դրախտն ես, քեզի Սուրբ Գիրքը վըկայ,
Քու միջիցըդ անմահութեան հոտ կուգայ.
Հազար ափսո՜ս մարդուց թափուր են հիմայ
Քո բազմամարդ վիճակներըդ, հայրենիք։

Աշուղ Ջիւանի

# ԱՁՔԵՐԸ

Ուսանող Թունեանը նստել էր կայարանի մօտ գտնուող պուրակում և անհամբեր սպասում էր հիւսիսային Կովկասի գընացքին, որը բերելու էր Մոսկուայից նրա ընկերոջը։

Դեռ երեսուն և հինգ վայրկեան կար, իսկ նրա համբերութիւնը սպառուելու մօտ էր։ Արդէն յոգնել էր մենակ կեանքից, յոգնել էր փարթամ ամարանոցի բնութեան գեղեցկութիւններից, յոգնել էր անթիւ տպաւորութիւններից և արտայայտուելու պահանջ էր զգում։

Նա մերթ ձեռնափայտով իր անունն էր գրում գորշագոյն աւազի վրայ, մերթ անց ու դարձ անողներին զննում, բայց աւելի յաճախ գրպանից ժամացոյցն էր հանում նայում և տհաճութիւն արտայայտող շարժումով դնում գրպանը։

Արևն արդէն թաքնուել էր անտառապատ սարի ետևում. նրա վերջին կարմրաւուն շողերը խաղում էին ծառերի խիտ սաղարթների հետ և անդրադառնում հեռու հորիզոնում կուտակուած սպիտակ ամպերի վրայ։

Ուսանողը նայեց կարմրաւուն ամպերին և հիացաւ, ակամայից համեմատեց Մոսկուայի գորշ երկնքի հետ և նորից ժամացոյցը հանեց։ «Սատանան տանի», փնթփնթաց նա, դեռ տասնհինգ վայրկեան էլ կայ. ժամացոյցը դրեց գրպանը և սկսեց դիտել շուրջը։ Յանկարծ աչքն ընկաւ դիմացի, հաստաբուն լորենու տակ զետեղուած նստարանի վրայ նստած կանանց. նրանցից մինը տարիքով էր, իսկ միւսը երիտասարդ. վերջինս յենուել էր լորենուն, գլուխը բարձրացրել և լուրջ ու անքթիթ նայում էր Թունեանին։ Թունեանն էլ իր կողմից մի զննողական հայեացք նետեց կնոջը, որի դիմագծերը նուրբ էին ու քնքոյշ, մի փոքր սրացած։ Երևի հիւանդ է, մտածեց նա, և այլևս չդիմանալով դիմացինի շեշտակի հայեացքին, աչքերը ձգեց գետին։ Դրութիւնն աննախանձելի էր. զգում էր, որ դեռ ևս հայեացքը սևեռուած է վրան, ուստի քաշւում էր գլուխը բարձրացնել։ Ձեռնափայտը նորից սկսեց իր վարժութիւնները, սակայն ոչ երկար. ուսանողը թեթև բարձրացրեց գլուխը և սկսեց գաղտագողի դիտել անծանօթ կնոջը։ Սա առաջուայ պէս շեշտ ու անթարթ նայում էր ուսանողին։ Թունեանը աւելի շփոթուեց և դիրքը փոխեց, այնպէս որ աչքի պոչով տեսնում էր օրիորդի աջ կիսադէմքը և շարունակում իր զննումը։ Է՜, ինչ կայ շփոթուելու, մտածեց Թունեանը, եկ այնպէս շեշտակի նայեմ աչքերին, որ ինքն իրան մոռանայ և անյարմար զգայ։ Ուստի արագ երեսը շրջեց կանանց կողմը, գլուխը բարձրացրեց և խեղդելով իւր շփոթութիւնը աչքերը սևեռեց օրիորդին ու զարմանքով նկատեց, որ նա տրամադրութիւն իսկ չունի շփոթուելու և նայում է միևնոյն շեշտ հայեացքով։

«Գրողը տանի, մտածեց Թունեանը աչքերը խոնարհելով. ա՛յ քեզ համարձակութիւն. չէ, սա Մոսկուայի աղջիկներից էլ անցաւ...» Ձեռնափայտը նորից սկսեց իւր գործունէութիւնը։ Ուսանողին այրում էր իրեն մեխուած հայեացքը։ Նա նորից սկը-

*) Գ. Դ. Օ.-ն մոռանում է միայն, որ հասկանալի է և բնական, երբ բարբարոս թուրքը գազան է դարձել, բայց ուշքի գալով ճգնում է հերքել իր գազանութիւնները, որովհետև երևի ամաչում է իր քստմնելի արարքից, իսկ քաղաքակիրթ ժողովրդի որդին, գերմանացին, որ յոխորտում է իր կուլտուրայով, ինչպէ՜ս անպատկառ և անամօթ արդարացնում է գազանին։ O tempora o mores! Այո՛, այո՛, „Deûtschland, Deûtshland ûber alles in der Welt.

Խմբ.

սեց իր գաղտագողի դիտումն և յանկարծ գլուխ արածի պէս համարեա բացականչեց. վա՜յ գրո՜ղը տանի, այդ ինչ սիրուն աչքեր են եղել, ինչո՞ւ մինչև այժմ չնկատեցի և նրանց հայեացքն անպատասխան թողի։ Եւ նա գլուխը համարձակ բարձրացրեց և սկսեց նայել. քանի նայում էր, աչքերն այնքան գեղեցկանում էին։

Յանկարծ ուսանողի սիրտը ճմլուեց. «նա կարծես ինձ չի նայում», մտածեց յուզմունքով. նայեց շուրջը, ոչ ոք չկար. «հասկա՜ցայ», փնտռում էր Թունեանը, ու նա գտաւ. փոխ օրիորդը իր գեղանի աչքերով յառել էր տարածութեան, որի մի փոքրիկ կէտը Թունեանը ևս ամփոփուել էր հայեացքի խորութեան մէջ։ Ուսանողն այժմ իր հերթին ակնապիշ ու անքթիթ նայում էր դիւթական աչքերին և խորասուզւում անհունութեան մէջ։

Յանկարծ կանայք վեր կացան. տարիքաւոր կինը թեր տուեց երիտասարդին և նրանք առաջ անցան. ուսանողին թւաց թէ հիասքանչ աչքերով փոխ օրիորդը ուժով հեռացրեց աչքերը իրանից։ «Ո՞ւր են գնում», անցաւ նրա մտքով, և ինքն էլ ինքնաբերաբար վեր կացաւ տեղից։ Շուրջն աղմուկը շատացաւ, երթևեկը կրկնապատկուեց և նա լսեց զանգի երկարատև և սուր ղողանջիւնը, որ ծանուցում էր գնացքի ժամանումը։ Առաջից գնում էր սիրուն աչքերով օրիորդը կազմուածքին չհամապատասխանող խրոխտութեամբ, գլուխը բարձր, քայլուածքը ծանր... Մտան կայարանի առաջին կարգի դահլիճը. «երևի հանդիպելու են եկել», մտածեց Թունեանը գնալով կանանց ետևից, մոռանալով իր գնալու իսկական նպատակը։ Լսուեց մօտեցող գնացքի փնչիւնը, եռ ու զեռը զգալ տուեց իրան, մարդկային մի ալիք բաժանեց իրարից հետևողին և հետևուողներին։ Թունեանը սկսեց փնտռել և յանկարծ զգաց իրեն մէկի գրկի մէջ և ականջի տակ գնգաց, «Ա՜յ բարով աղա՛, հ՞ը, ինչ ես փնտռում՝ ես այստեղ եմ»։ Սպասած ընկերն էր, Ռուբէնը, որը առանց պատասխան ստանալու սկսեց քարշ տալ ետևից, իր հնչեղ ձայնով վրայ տալով, «ախր էլի հանդիպողներ պէտք է լինեին, թէ չե՞ն եկել... և առանց սպասելու թէ ո՛վ, ե՞րբ, սրան նրան հեռացնելով ձայնեց. «հօրաքո՜յր, հօրաքո՜յր, այստեղ եմ... Թունեանը հետևեց ընկերոջ և յանկարծ մի միտք ակոսեց նրա ուղեղը. «սիրուն աչքերով օրիորդն ու մայրը»...։ Արի մօտեցիր, կանչում էր Ռուբէնը։ Մօտեցաւ, ծանօթացին... Ռուբէնը վրայ էր տալիս. է, հօրաքո՜յր, տեսնուեցինք հիմա չէ, հիմա չեմ գայ, կերթամ ընկերոջս մօտ, կարգի կ՚ընկնեմ. դէ մարդ է, չոր է մոր, իսկ երեկոյեան սպասիր։ Ես ու ընկերս կրգանք...»

Ինչպէս բաժանուեցին տիկնոջից և օրիորդից, ինչ պէս եկան տուն, Թունեանը չիմացաւ։ Աչքերը այնպէս գրաւիչ էին, աչքերը այնպէս հմայող էին, բայց լուռ ու լուրջ։ Օրը, ամառային օրը, այնպէս երկար էր...

* * *

Թէյը վերջացրել էին. երեխաները գնացել էին քնելու։ Սիրուն աչերով օրիորդը, սիրուն Սառան, Ռուբէնի հետ թեանցուկ շրջում էին պատշգամբում։ Թունեանը և տիկինը նարդի էին խաղում. խաղում էր առ հարկի. տարւում էր. մերթ պատուհանից և մերթ էլ պատշգամբ բացուող դռնից թարթում էին երկնքում պէծիկ ժպտուն աստղերը. և Սառայի աչքերը. լուրջ ու հրապուրիչ... և ինչ առանձին ռազմի տրամադրութեամբ է խաղում տիկինը։ Չէ, սրա աչքերը լաւ չեն. ինչու...

Վերջապէս Սառան ու Ռուբէնը ներս մտան

—Լսի՛ր, Լեոն, դարձաւ նա Թունեանին. կուզե՞ս լսել դաշնամուրի ասիական եղանակներ։

—Ամենայն ուրախութեամբ, բացականչեց Թունեանը հրճուանքով. զգալով որ նուագողը Սառան պիտի լինի. և մի քնքոյշ միտք ճառագայթեց. «աչքերը կը խօսեն, անպայման կը խօսեն»... Տիկինը ծածկեց նարդին. վեր կացան։

Ռուբէնը կոմիկ հանդիսաւորութեամբ թևանցուկ մօտեցրեց Սառային դաշնամուրին։ «Դե՛հ, օրիորդ, շաղակրատեց նա, մենք քո ծառան, դու մեր տէրը. հմայիր, շղթայիր... գերիր»։

Մի քնքոյշ ժպիտ լուսաւորեց Սառայի դէմքը, որից սակայն զուրկ մնացին աչքերը։ Ռուբէնը քաշուեց մի անկիւն, կարծես վախենալով որ իրեն կը խանգարեն. Թունեանը տեղ բռնեց դաշնամուրի մօտ, օրիորդի հանդէպ։ «Աչքերը կը խօսեն», հնչում էր նրա գանգում հին սիրած երգի նման։

Օրիորդը տեղաւորուեց, մի քանի նուազ նոտաներ և սկզբնական վարժութիւններ խանգարեցին սենեակի լռութիւնը. նախապատրաստելով ունկնդիրների լսողութիւնը։ Լսուեց մի խրոխտ ակորդ, ծորուն «Չարգահի» առաջի խրոխտ ձնգոցը. և առաջին ակկորդի թրթիռը դեռ չլռած, լսուեց երկրորդը, երրորդը... ծաւալուող ու մելամաղձոտ. ապա քանի գնաց արագացաւ, առաջին խաղի թրթիռը ընդգրկեց երկրորդին, երրորդին, ուժեղացան ու ծաւալուեցին...։

Թունեանը իրեն մոռացաւ...

Աղջամուղջ է. անհուն անապատ, անծայր հորիզոն, մարմրուն աստղեր։

Հեռուից լսւում է զրնգ-զրնգ, զրնգ հա զրնգ, զրնգ հա զրնգ... Թրթռում, զալարւում և ծորում է զանգերի ղողանջը, և ուղտերի կարաւանը շարան շարան յամր ու օրօրուն կարճում են ճանապարհը... Զրնգ հա զրնգ, զրնգ հա զրնգ ու նրանց ընկերակցում է մի ուրիշ ոլորտաւոր հնչիւն, ձիգ ու մելամաղձիկ, ողբշունչ և թախծոտ. ուղտապանն է։ «Լուսաբացի մեղեդին» աւետում է ակնկալողներին այգի մօտիկութիւնը... Օրօրւում է կարաւանը, օրօրւում է ուղտապանը, օրօրւում է անապատը, հնչւում է երգը... Հեռաւոր արևելքը բոսոր հագաւ. հրաշէկ գունդը մեծանում է, ստուերները չքանում են, աստղերը մարում են. միայն երկու աստղ՝ հեռու, առանց փայլի լուրջ ու անթարթ նայում են, չեն խօսում։ Զ՞րնգ... թրթռաց, կերկերաց ու մարեց վերջին ակկորդի վերջին խաղը... Թունեանը սթափուեց։ Սառայի գեղեցիկ աչքերը նայում էին նրան լուրջ ու անթարթ։ «Չե՛ն խօսում»... հեծեծաց նրանում մի բան... Ուսանողը այժմ նայում էր անընդհատ, առանց քաշուելու, առանց յետին մտքի։ Ուզում էր խորանալ, ըմբռնել, թափանցել աչքերի խորքն ու նրանց գաղտնիքը։ «Ի՞նչն է աւելի գեղեցիկ», ճգնում էր գտնել նրա միտքը, խօսուն, թախծոտ «Չարգա՞հը, անհուն անապա՞տը, բոսոր արևե՞լքը, թէ՞ այդ համր աչքերը»... «Աչքե՜րը, աչքե՜րը», պնդում էր յուզուած բաբախող սիրտը։

Ուշ էր։ Ուսանողները «բարի գիշեր» մաղթեցին և ուղևորուեցին Թունեանի բնակարանը։ Չը խօսեցին. երկուսն էլ դեռ լսում էին թրթռացող մելանոյշ Չարգահը։

Սենեակում բանաստեղծութիւնը տեղի տուեց. արտայայտուելու պահանջ էին զգում։

—Հաւանեցի՞ր, խզեց լռութիւնը Ռուբէնը։

—Ի՞նչը։

—«Չարգահը»։

—Շատ, պատասխանեց Թունեանը մի քիչ ընկած ձայնով։

—Հը՞մ, մեր աղայ, կատակեց Ռուբէնը, չը լինի՞ մի ուրիշ բան։

—Հա՛, պարզութեամբ խոստովանուեց Թունեանը. Սառայի աչքերը, և համարեա շշնջաց, չեն խօսում, այնպէս ուզում էի, չը խօսեցին աչքերը. ինչու, երեխայի թախանձանքով դիմեց նա Ռուբէնին։

—Ի՞նչու, չը գիտե՞ս ինչու չեն խօսում. մի՞թէ չասացի. չը հասկացար էլ. չէ՞ որ Սառան կոյր է...

10 փետր. 1916. Թիֆլիս. Սուրէն Սիմակեան

# Գիտութիւն

## ՀԱՅԵՐԷՆ ՏԱՂԱՉԱՓՈՒԹԵԱՆ ՄԱՍԻՆ *)

### II

4. Մենք գտանք, որ մեր ոտանաւորը պատկանում է շեշտական կոչուած ոտանաւորների տեսակին. բայց այդ դեռ չի նշանակում թէ մեր լեզուին յատուկ են շեշտական ոտանաւորների բոլոր ձեւերը, որ ունեն ուրիշ լեզուներ։ Այստեղ արդէն ամեն լեզու իր առանձին յատկութիւններն ունի, ուստի և միշտ չի կարող յաջողութեամբ իւրացնել այս կամ այն լեզուի մէջ գործածական այս կամ այն շեշտական չափը։ Ինչ որ գերմաներէնում հնարաւոր է, յաճախ հնարաւոր չէ հայերէնում։ Այս տարբերութիւնների պատճառը լեզուների շեշտադրութեան այլազանութիւնն է։

Շեշտական ոտանաւորների ամենապարզ տեսակն է միանման պարզ ոտքերի կանոնաւոր յաջորդութեամբ կազմուածը, որ հինգ ձեւով է առաջ գալիս։ Դրանցից երկու ձեւը երկավանկ ոտքերով են, շեշտ ունենալով առաջին կամ երկրորդ վանկի վրայ. երեք ձեւն էլ եռավանկ ոտքերով են, շեշտ ունենալով առաջին, երկրորդ կամ երրորդ վանկի վրայ։

1. Մեծասար (տրոքէոս կամ քորէոս), հայրը, քաղցր.
2. Մեծավերջ (յամբ), օրէնք, բարի.
3. Սահղն (դակտիլ), մանաւանդ.
4. Քողաղօտ (ամֆիբրաքոս), քաղաքը, գալիս է.
5. Վերջատանջ (անապեստ), զօրավոր, թագաւոր։

Երաժշտականօրէն այս հինգ ձեւը վեր են ածւում երկուսի. որովհետև, ինչպէս վերևում բացատրեցի, ամեն յամբական ոտանաւոր, որ կազմուած է երկավանկ ոտքերից, որոնց շեշտը երկրորդ վանկի վրայ է,—առնւում է իբրև մի քորէական ոտանաւոր՝ սկզբից և վերջից ունենալով մի միավանկ թերատակտ՝

Ամպի | փէշով | մէկ հուք | անցաւ...

յամբական ոտանաւորն ըմբռնւում է իբրև

Ամ | պի փէ | շով մէկ | հուք ան | ցաւ...

Նոյնպէս և ամեն քողաղօտեան և անապեստեան ոտանաւոր երաժշտականօրէն առնւում են իբրև դակտիլական։ Այսպէս հետևեալ քողաղօտեան ոտանաւորը՝

Այս | կեանքս է | ունայն և | ժամանց ենք | մահու...

Վերածւում է թերատակտով դակտիլականի.

Այս | կեանքս է ու | նայն և ժա | մանց ենք մա | հու...

Նոյնպէս և հետևեալ անապեստեան ոտանաւորը.

Սիրուհին | սըրտատրոփ | նայեցաւ | լըճակին։

Առնւում է իբրև դակտիլական՝

Սիրու | հին սըրտա | տրոփ նայե | ցաւ լըճա | կին...

Երաժշտի տեսակէտով ուրեմն առանձին նշանակութիւն չունի, թէ արդեօք վերևում գրուած հինգ ձեւով էլ ոտանաւորներ կարող է ունենալ մի լեզու, թէ ոչ։ Բայց նոյնը չէ լեզուի, որ մի և նոյն է թէ տաղաչափի տեսակէտով։ Այստեղ յամբական ոտանաւորը իր բնաւորութեամբ խիստ տարբերւում է քորէականից, ինչպէս և քողաղօտեան ու անապեստեան ոտանաւորները՝ դակտիլականից։ Քորէական ու դակտիլական ոտանաւորներն ընկնող բնաւորութիւն ունեն, մինչ յամբն ու անապեստը՝ բարձրացող են, իսկ քողաղօտն՝ բարձրացող և ընկնող է. ուստի և դրանց թողած տպաւորութիւնը բոլորովին ուրիշ է։ Որքան մի լեզու ճկուն է իր շեշտադրութեամբ, այնքան աւելի նա կարողանում է հեշտութեամբ այդ հինգ ձեւն էլ գործածել և գործածել մաքուր ձեւով։ Տեսնենք մեր լեզուի յատկութիւնը։

ա. Դակտիլական ոտանաւորի համար բոլորովին անընդունակ է մեր լեզուն. որովհետև մի տասը բառ չենք գտնիլ, որոնց շեշտը լինէր վերջից երրորդ վանկի վրայ, ինչպէս՝ մանաւանդ, թագաւոր (կոչականի շեշտով). մինչդեռ՝ որպէսզի մի ոտանաւոր դակտիլական բնաւորութիւն ունենայ, ոտքերի առնուազն երկու երրորդ մասը պէտք է դակտիլական բառի ոտքերից կազմուած լինի։

բ. Քորէական ոտանաւոր հնարաւոր է յօրինել, որովհետև մեր լեզուի մէջ կան մի քանի տասնեակ բառեր վերջընթեր վանկի շեշտով՝ քաղցըր, աստըղ և այլն. ը յօդով կազմութիւնը՝ տունը, հայրը։ Ապա կարելի է օգտուել քողաղօտ ոտքերից՝ քաղաքը, գալիս է. որովհետև մ ե ր ք ա ղ ա ք ը... ն ա գ ա լ ի ս է կարող են առնուել իբրև երկերկու քորէներ։ Բայց այսպիսի ոտանաւորը, մաքուր քորէական ձեւով, ինչպէս գերմաներէնում է, յամենայն դէպս դժուարութեամբ գլուխ կը գայ և շատ միակերպ կը լինի. որովհետև լեզուի ընձեռած միջոցը շատ սահմանափակ է, քանի որ իսկական յարաշեշտ (այսինքն վերջընթեր վանկի վրայ շեշտուող) բառերը շատ ու շատ քիչ են, իսկ մնացածը պիտի լինի յօդով գործածութիւն (տունը) կամ քողաղօտ յօդով ու բաղադրեալ ձեւով (գալիս է)։ Մանրամասնութեան մէջ չենք ուզում մտնել։

գ) Յամբական ոտանաւոր շատ աւելի հեշտութեամբ կարելի է յօրինել մեր լեզուի մէջ, քանի որ հազարաւոր երկավանկ բառեր ունենք վերջից շեշտուած, և յամբի համար կարելի է գործածել նաև քորէներն ու անապեստները միավանկներով. մի ք ա ղ ց ր տ ա ն ձ. գ ա լ ի ս է ն ա. առնւում են իբրև երկերկու յամբ։ Այսպիսի ոտանաւորները յամենայն դէպս, ինչքան էլ իրենց կանոնաւոր տակտերով՝ շեշտ ունենալով ամեն երկրորդ վանկի վրայ՝ շատ երաժշտական են, սակայն միանման տակտերի հաւասարաչափ կրկնութեամբ յոգնեցնող և ձանձրալի են նոյն իսկ գերմաներէնում, չնայելով որ այս լեզուն շեշտադրութեան պատճառով, իր բառերի գլխաւոր և երկրորդական, ուրեմն կրկին շեշտերով, թոյլ է տալիս 1—4 և աւելի վանկանի բառեր գործածել ոտանաւորի մէջ, առանց մի որ և է ռիթմական շեշտ պակաս թողնելու։ Միակերպութիւնը վերացնելու համար գերմանացի բանաստեղծներն աշխատում են յամբական ոտանաւորի մէջ, որքան կարելի է, յաճախ գործածել քորէական և քողաղօտ բառեր (քաղցըր, գալիս է), որոնցով այդ լեզուն շատ ու շատ աւելի հարուստ է, քան հայերէնը. բացի այդ՝ երբեմն նոյն իսկ դիտաւորեալ կերպով ռիթմական շեշտի տեղափոխութիւն են անում, փոխանակ տողի սկզբից երկրորդ վանկը շեշտուած դնելու, շեշտուած են դնում առաջին վանկը և ապա չորրորդը. ինչպէս՝ Մ է ր ը ս կ ո ւ լ ա յ ո ւ բ ո ւ ն չ ո ւ ն ի, փոխանակ շեշտելու՝ Մ է ր ը ս կ ո ւ լ ա յ... Մեր լեզուի մէջ շեշտի տեղափոխութիւն, ի հարկէ, միշտ կարելի է անել, նոյնպէս քորէական և քողաղօտ ոտքերի խառնուրդ, թէպէտ աւելի պակաս քան գերմաներէնում. բայց և այնպէս այդ տաղտկալի միակերպութիւնը շատ աւելի մեծ կը լինի, եթէ մաքուր յամբական ոտանաւոր յօրինուի. որովհետև այսպէս թէ այնպէս՝ ոտանաւորը պիտի կազմուած լինի ամենամեծ մասամբ միավանկ ու երկավանկ վերջաշեշտ բառերից. եռավանկ (բացի քողաղօտ բառերից) ու քառավանկ և աւելի վանկեր ունեցող բառերը պիտի դուրս ընկնեն ոտանաւորից։ Բայց եթէ այդպիսի տողեր հնարաւոր են, ինչպէս՝

Հայոց արիւն քեզ լոկ այդքան անուշ թուեց...

արդեօք հնարաւոր են ամբողջական գրուածներ, որոնց մէջ չլինէին եռավանկ և քառավանկ բառեր։

Կընշանակէ, գերմաներէնի ձեւով յամբական ոտանաւորի ևս մեր լեզուն ընդունակ չէ։

Ասացինք, գերմաներէնի շեշտադրութիւնը թոյլ է տալիս կանոնաւորապէս ռիթմական շեշտեր ունենալ ամեն երկրորդ վանկի վրայ, միաժամանակ և 1—4 և աւելի վանկանի բառեր գործածել։ Այսպէս չէ սակայն ռուսերէնում, որի մէջ նոյնպէս ընդունուած է նոյն ոտքերի կանոնաւոր յաջորդութեամբ ոտանաւորը։ Ռուսերէնում բազմավանկ բառերը միայն մի շեշտ ու-

*) Տես «Համբաւաբեր» № 21։

նին, ինչպէս և հայերէնում, և եթէ յամբական տողի մէջ բոլոր ռիթմական շեշտերը լինէին, այն ժամանակ երեքից աւելի վանկեր ունեցող բառեր չպիտի գործածուէին, եռավանկ բառերն էլ, ինչպէս հայերէնում, միայն քողաղօտ պիտի լինէին։ Արդարև ռուսերէնը քորէական և քողաղօտ բառերով շատ աւելի հարուստ լինելով քան հայերէնը, աւելի ես ճկուն է և ընդունակ այդպիսի ոտանաւորի քան հայերէնը. բայց և այնպէս ռուսերէնում ես այդպիսի ոտանաւորը կըդառնար միակերպ և ձանձրալի։ Այդ պատճառով ռուս բանաստեղծները գերմաներէնից փոխ առնելով շեշտական տաղաչափութիւնը՝ իրենց լեզուի ոգու համեմատ փոփոխութիւն են մտցրել ոտանաւորի կազմութեան մէջ։ Մինչ գերմաներէնում պահանջւում է, որ յամբական (ինչպէս և քորէական) ոտանաւորի մէջ բոլոր ռիթմական շեշտերն էլ լինին, այսինքն շեշտուած լինին ամեն երկրորդ վանկերը,—ռուսերէնում թոյլատրելի է, որ մէկ մէկ չլինին ռիթմական շեշտերը. որով անշեշտ վանկերը տաղաչափօրէն համարւում են իբրև շեշտուած։ Ռիթմի համար պահանջւում է ուրեմն, որ բնական շեշտն ընկնի միշտ ոտանաւորի ռիթմական շեշտի հետ, այսինքն բնական լեզուի մէջ շեշտուած վանկը դրուի միշտ յամբական ոտանաւորի ոտքի երկրորդ շեշտուած վանկի մէջ. բայց կարևոր չէ, որ ամեն ոտքի երկրորդ վանկերը շեշտուած լինին։

Вотъ сѣ́веръ, ту́чи нагоня́я,
Дохну́лъ, завы́лъ—и во́тъ сама́
Иде́тъ волше́бница зима́.

Այստեղ нагоня́я բառի առաջին վանկը և волше́бница բառի վերջին վանկը տաղաչափօրէն ենթադրւում են շեշտուած, թէպէտ իրօք անշեշտ են։ Արդարև ռիթմիկ-երաժշտական տեսակէտով այսպիսի ոտանաւորը անկատար է գերմանական ոտանաւորի դիմաց, որ ունենում է բոլոր ռիթմական շեշտերը, բայց տաղաչափական տեսակէտով այդ ոտանաւորը պակասաւոր չէ, քանի որ բառերի բնական շեշտերը և ոտանաւորի ռիթմիկ շեշտերը բռնում են իրար. իսկ եթէ մէկ մէկ պակասում են ռիթմական շեշտերը, դրանով ոտանաւորն աւելի բազմազան և աւելի գրաւիչ է դառնում, ազատուելով միանման տակտերի միակերպութիւնից և հնարաւորութիւն տալով բանաստեղծին ազատ կերպով գործածելու բազմավանկ բառեր ևս։

Այս միևնոյն տաղաչափական ազատութիւնից օգտւում է նաև մեր ոտանաւորը, որ յարմարւում է մեր լեզուի յատկութիւններին.

Ի բո՛ւր | ձայնից | բնութեան | շըքեղ
Թէ երգք | թըռչին | սիրո՝ | զարմա՛ր,
Մատո՛ւնք | կուսին | ամե՝ | նազեղ
Թէ ո՛ր | զարնե՛ն | փափո՛ւկ | քընա՛ր…

Պէշիկթաշլեանի այս տողերի մէջ քառավանկ բառերը ս ի ր ո ղ ա բ ա ր, ա մ ե ն ա գ ե ղ առնւում են իբրև երկերկու ոտքեր. դրանց երկրորդ վանկերը, որ անշեշտ են, ընկնում են երրորդ յամբական ոտքի ամբարձման, այսինքն շեշտուած վանկի մէջ. դրանով թէպէտ խանգարւում է ռիթմը, բայց մասամբ գոնէ փարատւում է միւս ոտքերի միակերպութիւնը, որ զգալի է մանաւանդ նրանով, որ բոլոր ոտքերը կազմուած են յամբական բառի ոտքերով, առանց որ և է քորէական կամ քողաղօտ ոտքերի խառնուրդի։

(Կը շարունակուի) Մ. Աբեղեան

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ

Հրատարակիչ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ